# ԱՇՈՒՆ

Աշունն իր անթիվ գույներով նորից
Ներկել է սարեր. ձորեր գեղանի.
Ժպտում են ահա անծայր դաշտերից
Կանաչ արտերը աշնանացանի։

Այգիներն արդեն նայում են թափուր.
Հնձան է մտել խաղողը գոհար.
Ու երամ-երամ. երկնքով կապույտ
Բյուր կռունկներ են չվում անդադար։

Փոքրիկ առվակն էլ երգում է անուշ,
Անտառներում մերկ ծառերն են շրշում,
Ա՜խ. ինչքա՜ն. ինչքա՜ն հմայքներ ունես,
Իմ չքնաղ երկրի ոսկեղեն աշուն։

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Արթիկի շրջան, Հնաբերդ գյուղ)

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ



№ 10 1957 թ.
ՀՈԿՏԵՄԲԵՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ




Նրան տեսնում էին բանվորների շարքերում 1905 թվականի ցույցերի ժամանակ։ Մեծ Հոկտեմբերի օրերին նա հրամաններ էր տալիս Կարմիր գվարդիայի ջոկատներին, որոնք գրոհում էին Ձմեռային պալատի վրա, վերցնում փոստը և հեռագրատունը, կամուրջները և բանկը։ Լենինը հռչակեց Սովետական պետության ծնունդը։ Մեր երկրի ղեկավարներից մեկն է դառնում նա, Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկին, Կոմունիստական պարտիայի հավատարիմ զավակը։ Պարտիան նրան հանձնարարում է հետախուզության, տրանսպորտի, վերջապես, երկրի ամբողջ տնտեսության ղեկավարությունը։ Եվ ամենուր, գերմարդկային եռանդով գիշեր ու ցերեկ աշխատում էր Ձերժինսկին։ Բայց 1926 թվականի հուլիսի 20-ին մահը նրան խլեց մեր շարքերից։

Սովետական մարդիկ սիրում են Ձերժինսկուն և իրենց սրտերում միշտ վառ են պահում նրա պայծառ հիշատակը։

# ՆԿՈՒՂՈՒՄ

ՅՈՒ. ԳԵՐՄԱՆ — Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Մի անգամ ուշ գիշերին Ձերժինսկին գնում էր տուն։ Թաց, մառախլապատ աշուն էր։ Անձրևում էր։ Մի հին, կիսաքանդ տան մոտ բազմություն կար հավաքված։ Ձերժինսկին մոտեցավ, լսեց խոսակցությունները։ Տան նկուղից հնչում էր խուլ ու բարկացկոտ մի ձայն. այնտեղ ինչ-որ մեկը թրխկում էր, լուցկիները չխկացնում և հայհոյում։*

*— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Ֆելիքս Էդմունդովիչը։*

*— Մի փոքրիկ տղա է, ինչ-որ անապաստան,— ասաց քուրքի մեջ փաթաթված մի կին,— մտել է նկուղը և տիֆով հիվանդացել։ Պառկած է՝ գիտակցությունը կորցրած, դուրս բերելն էլ անհնարին է։ Լուսամուտները բարձր են, դուռն էլ փակված է։ Իմ սերսլի ամուսինը այնտեղ է, ելք է փնտրում։*

*Ձերժինսկին գնաց և քառորդ ժամ հետո վերադարձավ կարմիրբանակայինների մի տասնյակի հետ։ Կարմիրբանակայինները կրում էին լինգեր, բլուզներ, բահեր, պատգարակ։*

*Պոկեցին սվաղը, քանդեցին պատի մի մասի աղյուսները և սողալով մտան նկուղը։*

*Ձերժինսկին ներս մտավ առաջինը։*

*Տղային գտան մի հեռու անկյունում։ Նա ընկած էր մոռացության մեջ, և նրա հառաչը հազիվ էր լսվում։*

*Ձերժինսկին միանգամից վառեց մի քանի լուցկի և ծունկի իջավ տղայի մոտ։*

*— Նրան առնետները կրծոտել են,— խուլ ձայնով ասաց նա,— անա՛ ձեռքը, և ուսը՝ նույնպես։ Երբ հիվանդացել է ու, ըստ երևույթին, կորցրել գիտակցությունը, առնետներն հարձակվել են նրա վրա։ Մի լույս արեք, ես նրան դուրս կբերեմ։*

*Նա տղային բարձրացրեց ձեռքերին և, աշխատելով չսայթաքել, զգուշորեն տարավ դեպի պատի բացվածքը։*

*Արդեն լուսանում էր։*

*Առաջվա նման, տան մոտ հավաքված էր բազմություն։*

*Այստեղ Ձերժինսկին տղային դրեց պատգարակի վրա, կարմիրբանակայինները բարձրացրին ու*

տարան։ Ֆելիքս Էդմունդովիչը գնում էր նրանց ետևից։

Երբ կարմիրբանակայինները և Ձերժինսկին անհետացան անձրևի ու մառախուղի մեջ, բոլորի մեջ փայլատակված կինը հարցրեց.

— Էդ ո՞վ էր, որ տղային հանեց։ Ինչ նիհար էր։ Դեմքն էլ հոգնած։

Մի անծանոթ նավաստի պատասխանեց.

— Դա Ձերժինսկին էր, ՎՉԿ-ի նախագահը։

Իսկ ՎՉԿ-ի նախագահ Ձերժինսկին այդ ժամանակ քայլում էր պատգարակի հետևից, երբեմն սրբելով անձրևից թրջված դեմքը։

Այդ գիշեր նա նորից տուն չգնաց։

Հենց հիվանդանոցից, որտեղ կարմիրբանակայինները տարան տղային, նա վերադարձավ ՉԿ, իր առանձնասենյակը, և նստեց սեղանի մոտ աշխատելու։ Մինչև առավոտ նա եռացրած ջուր էր խմում և գրում, իսկ առավոտյան նրա մոտ հարցաքննության բերին մի նախկին բարոնի։ Այդ բարոնը իրեն զինվոր էր կոչել, և նրան նշանակել էին հոսպիտալների մթերային պահեստների կառավարիչ։ Սովետական կարգերի նկատմամ [illegible]ցած ատելությունից բարոնը պահեստում գտնված ամբողջ ալյուրի վրա նավթ էր լցրել։ Վիրավոր և հիվանդ կարմիրբանակայինները մնացել էին առանց հացի։

— Նստեցե՛ք,— ասաց Ձերժինսկին բարոնին։

Բարոնը նստեց։

Ձերժինսկին դանդաղ իր աչքերը բարձրացրեց նրա վրա։

— Դե,— ցածրաձայն ասաց նա,— պատմեցեք։

Եվ բարոնը, որը մինչև այդ չէր խոստովանել իր հանցագործությունը, հանկարծ արագ-արագ սկսեց խոսել։ Նա խոսում էր և դեռ փորձում էր իր աչքերը հեռացնել Ձերժինսկու հայացքից, բայց չէր կարողանում։

Ձերժինսկին ուղիղ նայում էր նրա դեմքին՝ ատելությամբ, արհամարհանքով և սառնությամբ։ Եվ պարզ էր, որ այդ հայացքի տակ անհնարին էր ստել, միևնույն է, ոչինչ չէր օգնի։

Միայն մի անգամ նա ընդհատեց բարոնին, այն ժամանակ, երբ վերջինս նրան անվանեց ընկեր։

— Ես ձեզ համար ընկեր չեմ,— ցածրաձայն ասաց Ձերժինսկին։

# ՄԵՐ ՇԱՀՈՒՄՅԱՆԸ



ԱՐՄԵՆԱԿ ՍԱՔՈՒԼՅԱՆ

(Հին բոլշևիկ, ՍՄԿԿ անդամ 1905 թվականից)

*1906 թվականն էր: Թիֆլիսում լույս էր տեսնում բոլշևիկյան «Կայծ» թերթը (հայերեն): Ես խմբագրության գրիչն էի, իսկ թերթի գլխավոր խմբագիրներն էին Ստեփան Շահումյանը և Սուրեն Սպանդարյանը:*

*Շահումյանը բարձրահասակ ու գեղեցիկ տղամարդ էր: Դեմքը պատած էր փոքր-ինչ թախիծով: Աչքերը կապույտ էին և շատ արտահայտիչ: Ես չեմ հանդիպել այնպիսի աչքերի, որոնք այնքան խոհուն ու խելացի լինեն: Եթե ճիշտ են ասել, որ աչքերը մարդու հոգու հայելին են, ապա դա ամենից առաջ վերաբերում էր Շահումյանի աչքերին: Գեղեցիկ արտաքինի հետ նա չափազանց ազնիվ ու վեհ հոգի ուներ: Ես ոչ մեկին այնքան կարոտով չէի սպասում տեսնել, որքան Շահումյանին: Շահումյանը ինչ-որ անբացատրելի հմայք ուներ, որը սիրելի էր դարձնում նրան բոլորի մոտ:*

*Նա շատ սիրալիր էր դեպի ընկերը, անչափ հոգատար և ուշադիր:*

*Հիշում եմ այսպիսի մի դեպք: Ես, թեև այդ ժամանակ տասնյոթ տարեկան տղա էի, բայց շատ ազատ չէի կարողանում գրել ու կարդալ թե՛ հայերեն և թե ռուսերեն: Դա ինձ շատ էր խանգարում, և ես մի օր վճռեցի վերջ տալ կիսագրագիտությանս: Վերցնելով թուղթ ու մատիտ, նստեցի գրասեղանի մոտ: Գլուխս կախել էի թղթի վրա և գրում ու ջնջում էի: Իմ այդ զբաղմունքը գրավել էր Շահումյանի ուշադրությունը: Մեկ էլ գլուխս վեր բարձրացրի, տեսնեմ՝ կողքիս կանգնած է Շահումյանը և հետաքրքրությամբ նայում է խզմզումներիս:*

*— Այդ ի՞նչ ես անում, — հարցրեց նա:*

*Շահումյանի հարցին ես պատասխանեցի շփոթմունքով:*

*— Լավ ես մտածել, թե չէ, ինչի՞ նման է լավ չիմանալ մայրենի լեզուն, ազատ գրել և կարդալ, — ասաց նա և ավելացրեց, — իսկ ռուսերեն գիտե՞ս:*

*— Մի քիչ, — ամաչելով պատասխանեցի ես:*

*— Ձեռավ, — ափսոսանքով ասաց Շահումյանը և դառնալով դեպի խմբագրության աշխատակիցներից մեկը, ասաց, — Սարգիս, ժամանակ գտիր և ամեն օր մի քիչ պարապիր մեր Արմենակի հետ:*

*Հետևյալ օրը Սարգիսը ինձ տվեց մի քանի տետր, գրիչ, մատիտ և երկու դասագիրք: Հետո իմացա, որ այդ բոլորը նվիրել է Շահումյանը:*

*Սարգիսը հոգատար ուսուցչի նման պարապում էր ինձ հետ՝ բաց չթողնելով ոչ մի օր:*

*Թեև Շահումյանը շատ էր զբաղված պարտիական գործերով, բայց գտնում էր ժամանակ և հետաքրքրվում իմ «դասերով»: Հաճախ նա մոտենում էր ինձ, ձեռքը դնում ուսիս և հարցնում.*

*— Հը՛, Արմենակ, ինչպե՞ս են դասերդ: Դե մի քիչ կարդա, տեսնենք ո՞նց ես կարդում:*

*Ես սիրով բաց էի անում գիրքը: Մի քանի տող հազիվ կարդալուց հետո սկսում էի սխալներ անել, վատ կարդալ: Ես զգում էի դա, բայց քանի որ Շահումյանը չէր ընդհատում ինձ, կարծում էի թե ուշադրությամբ չի լսում և ոչինչ չնկատեց: Այդ ժամանակ ես դեռ լավ ծանոթ չէի նրա բնավորությանը: Շահումյանը լուռ լսում էր մինչև վերջացնում էի ընթերցանությունը, ապա խոհուն աչքերով նայում էր ինձ և ժպտալով ասում, որ այսինչ բառը ճիշտ չկարդացի, այնինչ տառը սխալ արտասանեցի և այլն:*

*— Դա նրանից է, որ բարբառով շատ ես խոսում: Գրական լեզվով գրածն էլ էնպես ես կարդում, ասես Ջալալօղլու բարբառով գրված լինի, — ծիծաղելով ասում էր Շահումյանը, — սովորիր գրական լեզվով խոսել:*

*Ստեփան Շահումյանը որքան սիրալիր ու հոգատար էր դեպի ընկերը, այնքան էլ խըս-*

տապահանջ էր։ Նա չէր սիրում, երբ գործը կիսատ էին թողնում, կամ այսօրվանը հետաձգում էին վաղվան։ Շահումյանն այնքան պարտաճանաչ էր և իր նկատմամբ խստապահանջ, որ մարդ պատրաստ էր կյանքի գնով կատարել նրա ասածները և չէր նեղանա, երբ նա նաև խիստ էր լինում։

Ահա այսպիսի մի դեպք։ Մենք նոր բաժանորդ ունեինք, որը բնակվում էր քաղաքի ծայրամասում։ Այդ կողմերում ես դեռ չէի եղել։ «Կայծի» նոր լույս տեսած համարը ինձ արդեն ծանոթ հասցեները տանելուց հետո, գնացի այդ նոր բաժանորդի տունը գտնելու։ Շատ փնտրեցի, շատ մարդկանց հարցուփորձ արի, բայց իզուր. տունը չէի գտնում։ Արդեն մթնել էր։ Ամբողջ օրն էլ անձրև էր գալիս, և ես լավ թրջվել էի։ Քրքրված չստերիս անցքերից անձրևաջուրը ներս էր լցվել։ Ամեն անգամ, երբ ոտքերս փոխում էի, լսվում էր չստերիս անցքերից դուրս մղվող ջրի միօրինակ ձայնը՝ ճը՛ստ, ճը՛ստ, ճը՛ստ։

Հոգնած ու սոված վերադարձա խմբագրություն, որ լրագիրը թողնեմ այնտեղ և տուն գնամ։ Երբ ներս մտա խմբագրություն, տեսնեմ Շահումյանը մենակ նստած աշխատում է։



— Հը՛, ի՞նչ է պատահել։

Ես ասացի, որ նոր բաժանորդի տունը չեմ գտել և թերթը ետ եմ բերել։

— Դա խայտառակություն է,— տեղից վեր կենալով հանկարծ վրդովվեց Շահումյանը։— Դու ի՞նչ բոլշևիկ ես, որ մի՛ տուն էլ չես կարող գտնել։

Ես նրան երբեք այդպիսի վիճակում չէի տեսել և ընդհանրապես չէի պատկերացնում, որ նա կարող է զայրանալ։ Ինձ թվաց, թե Շահումյանը մինչև իմ գալը կամ ուրիշի վրա էր բարկացել, կամ այդ պահին այնպիսի բան էր մտածում գրել, որ իմ ներս մտնելը խանգարեց նրան։ Թե չէ, մի բաժանորդի թերթ չտալը ինչ մեծ հանցագործություն էր, որ այդքան վրդովեցներ մի մարդու, որը միշտ էլ վեճերի ու բանակռիվների ժամանակ իրեն պահում էր հանգիստ ու հավասարակշռված։

— Խայտառակություն է,— կրկնեց Շահումյանը,— դու համարո՞ւմ ես, բանվորը եկել է աշխատանքից, ճաշել և ուզում է իր լրագիրը կարդալ, իսկ դու...

Այս անգամ նրա անամպ աչքերում, ասես, սև ամպեր կուտակվեցին, և ճայթեց ամպրոպը:

— Ես չգիտեմ,— վճռական ասաց նա,— հենց հիմա գնա, գտիր տունը և լրագիրը հանձնիր իր պատկանելույն:

Ես չէի կարող առարկել Շահումյանին, բայց և անհնար էր նորից ետ դառնալ: Անխոս կանգնել էի նրա դիմաց և անթարթ հայացքով նայում էի մի կետի:

Լռությունը խզեց ինքը՝ Շահումյանը: Շրջանցելով գրասեղանը, նա մոտեցավ ինձ և, ինչպես միշտ, ձեռքը դրեց թաց ուսիս:

— Ահա թե ինչ: Դու ամբողջովին ջուր ես դարձել,— և մի կարճատև լռությունից հետո իր սովորական ձայնով սկսեց բացատրել, թե ինչքան վատ բան է բանվորի համար այս օրերին իր թերթը չստանալ:

— Ոչինչ, Արմենակ ջան, մի նեղանա,— շարունակեց Շահումյանը,— ես քեզ հիմա կբացատրեմ, թե ինչպես հեշտ գտնես մեր նոր բաժանորդի տունը:

Ի՞նչ անեի: Շահումյանին մերժել չէր կարելի. ես նրան շատ էի սիրում:

— Սա է հասցեն,— ծոցագրպանից հանելով մի թղթի կտոր, մեկնեց Շահումյանին:

Շահումյանը թղթի վրա մատիտով ցույց տվեց տան տեղը: Պարզվեց, որ մի քանի անգամ պտտվել էի այդ տան շուրջը և չէի գտել:

Ես դուրս եկա խմբագրությունից և ուղիղ գնացի բաժանորդին գտնելու: Շահումյանի բացատրությամբ առանց չարչարվելու գտա բաժանորդին և ներողություն խնդրեցի թերթը ուշ հասցնելու համար ու հայտնեցի պատճառները:

Վերադարձին տեսա, որ խմբագրության լույսերը դեռ վառվում էին: Գնացի: Շահումյանը աշխատում էր: Հայտնեցի, որ գտել եմ բաժանորդին: Նա այնքան ուրախացավ և մի այնպիսի ժպիտ նետեց վրաս, որը ջերմացրեց ինձ ու մոռացնել տվեց չարչարանքը:

Հետևյալ օրը Կասյանի միջոցով ես նոր կոշիկներ ու կապույտ սատինե մի վերնաշապիկ ստացա:

Գրական մշակումը՝ Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ



Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Վեցերորդ գլուխ

## Ո՞Վ ՊԻՏԻ ՃԱՇ ԵՓԻ: ԴՂՋՈՒԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ ԲՌՆՎՈՒՄ ԵՆ ՈՐԿՐԱՄՈԼՈՒԹՅԱՄԲ

Չորրորդ «ա» դասարանի աշակերտներն սկզբում կարծես չնկատեցին էլ, որ Գառնիկը միացել է երեք մտերիմներին: Իսկ ոմանք էլ գուցե նկատեցին, բայց կարծեցին, թե Գառնիկը կատարելով ջոկատի պիոներների հանձնարարությունը, օգնում է ընկերներին և այդ է պատճառը, որ մտերմացել է նրանց հետ: Ո՞ւմ մտքից կանցներ, թե հիմա Գառնիկը ոչ թե մի սովորական տղա է, այլ նավաբեկյալ...

Սկիզբը տես՝ «Պիոներ» №№ 7, 8, 9:

Բայց ճշմարտությունն ամենքի համար էլ պարզ եղավ, երբ մի անգամ Գառնիկը դպրոց եկավ առանց թվաբանության խնդիրը լուծելու: Ասենք, խնդիրը Զավենը, Վարդանն ու Երվանդն էլ չէին լուծել: Ամբողջ դասարանում այդ չորսը:

Թվաբանության դասատուն հարցրեց, թե ինչո՞ւ չեն լուծել: Չե՞ն կարողացել, թե՞ ծուլացել են:

— Գառնիկն էլ այդ ծույլերից վարակվեց,— չարախնդորեն նկատեց աղջիկներից մեկը:

— Չենք ծուլացել...— կմկմաց Գառնիկը:

— Ուրեմն չե՞ք հասկացել...

— Հասկացել ենք,— պատասխանեց Գառնիկը:

— Իսկ ինչո՞ւ չեք լուծել,— զարմացավ ընկեր Հովսեփյանը:

Դա մի այնպիսի հարց էր, որ չորսից ոչ մեկն էլ չէր կարողանա պատասխանել: Ի՞նչ պետք է պատասխանեին: Երեկ հավաքվեցին դասերը սովորելու, կարդացին խնդիրը. «Ա կետից դեպի Բ կետը թռավ մի ինքնաթիռ, ժամը 250 կմ. արագությամբ: Դրանից երեք ժամ հետո նույն կետից նույն ուղղությամբ թռավ մի ուրիշ ինքնաթիռ, ժամը 430 կմ. արագությամբ...»: Խնդիրը պահանջում էր... նրանք այդպես էլ չիմացան, թե ինչ էր պահանջում խնդիրը, որովհետև այդ միջոցին Զավենը հիշեցրեց, որ ռեակտիվ ինքնաթիռները հիմա շատ ավելի արագ են թռչում: Երվանդն ասաց, որ լավ կլիներ ռեակտիվ ինքնաթիռով գնալ Ազեր կղզին:

— Հարկավոր է կղզու վրա մի օդանավակայան կառուցել,— ավելացրեց Վարդանը: Եվ չորսով միասին դասը թողած սկսեցին խոսել ու երազել իրենց կղզու մասին այնքան, մինչև որ Վարդանի ծնողները աշխատանքից եկան:

— Էս ի՞նչ է, դասերը վերջացրե՞լ եք, որ նստել ինչ-որ ինքնաթիռների և կղզիների մասին եք խոսում,— անսպասելիորեն կից սենյակից ներս գալով, հետաքրքրվեց Վարդանի մայրը:

— Ըհը՛,— գլխով արեց Վարդանը:

Հետո քիչ էլ նստեցին, խոսեցին ու ցրվեցին տները: Արդեն բավականին հոգնած էին, և ամեն մեկը հույս էր դրել այն բանի վրա, որ ընկերները լուծած կլինեն, իսկ ինքը կարտագրի: Բայց հենց թվաբանության դասից առաջ, դասամիջոցին միայն պարզվեց, որ ոչ մեկն էլ չէր լուծել: Սիրտ չարին ուրիշից տետր վերցնել, և ահա այժմ չորսով միասին ոտքի կանգնած, չգիտեն, թե ինչ պատասխանեն:

Ի վերջո Հովսեփյանն ասաց.

— Չորրորդ դասարանում եք, բայց ձեզ դեռ շատ փոքրիկ եք երևակայում: Կարծում եք, թե ձեզանով պետք է ինչ-որ դայակներ զբաղվեն, հետևեն, թե դուք պատրաստո՞ւմ եք ձեր դասերը: Սխալվում եք: Ժամանակն է, որ սովորեք ինքնուրույն աշխատել, ժամանակն է, որ խելքներդ գլուխներդ հավաքեք, քանի դեռ առաջին քառորդը չի վերջացել:

Հաջորդ դասին Երվանդը մի երկուս էլ հայերենից ստացավ, դրանից հետո պատմության դասին երկու ստացան Երվանդը, Զավենը և Վարդանը: Նույնիսկ մեր հերոսների համար այդ օրվա արդյունքները ռեկորդային էին: Ճիշտ է, մինչև դասերի վերջը նրանց ոչ ոք չմոտեցավ, ոչինչ չասաց, բայց այդ լռությունն ավելի էր վախեցնում նրանց:

Մյուս օրը, դասամիջոցներից մեկի ժամանակ Գառնիկը մոտենալով Երվանդին շշնջաց.

— Վաղը քննելու են մեր հարցը:

— Ի՞նչ գիտես:

— Գոհարիկից իմացա:

Այդ դեռ բավական չէր, երրորդ դասամիջոցին դասարանի ղեկավար Վարդանյանը զրույց ունեցավ այդ չորս ընկերների հետ: Նա ամեն միջոց գործադրեց՝ իմանալու, թե ինչն է նրանց խանգարում, ինչով են զբաղվում, որ դաս չեն պատրաստում, բայց չկարողացավ: Նույնիսկ Գառնիկը, որ քիչ էր մնում լաց լիներ, էլի ոչինչ չասաց: Նա միայն կրկնում էր. «Ճիշտ եմ ասում, ոչինչ չի խանգարում»...

— Այդ դեպքում,— հոնքերը խոժոռելով ասաց դասղեկը, որը միևնույն ժամանակ պատմության



դասատու էր,— վաղը ես կխոսեմ ձեր ծնողների հետ, գուցե նրանք ասեն պատճառները, և մենք միասին մի հնար գտնենք ձեզ այս տխուր վիճակից հանելու...

Դասերից հետո չորսով միասին, փոխանակ տուն գնալու, քայլեցին անորոշ ուղղությամբ:

— Իսկի տուն գնալս չի գալիս,— ասաց Վարդանը:

— «Տուն գնալս չի գալիս», ինչպե՜ս չէ: Իսկ քաղցած փորը վեց-վեց է անում,— վրա բերեց Գառնիկը:

— Ճիշտն ասած, ես էլ տրամադրություն չունեմ տուն գնալու: Հիմի որ գնամ, հաց ուտելու ախորժակ էլ չունեմ,— խոստովանեց Երվանդը:

Զավենն էլ խոստովանեց նույնը: Ապա որոշեցին մի տեղ նստել և մտածել իրենց վիճակի մասին:

Քիչ հետո նրանց դիմաց բացվեց Հրազդանի ձորը:

Այդ տարի աշունը չոր էր, տաք: Այնքա՜ն հաճելի էր բնության գրկում գտնվելը: Բայց, իհարկե, տղաներին այստեղ բերողը ոչ թե բնության սերն էր, այլ մռայլ տրամադրությունը:

Նրանք իրար կողքի տեղավորվեցին մի խոշոր քարի մոտ կիսով չափ չորացած խոտերի վրա: Ներքևում Հրազդանն էր, որ միալար, անդուլ վշշոցով գալարում էր իր ալիքները:

— Երբ ամենքը կիմանան, թե ինչ մեծ գործով ենք զբաղված եղել մենք, շատ կփոշմանեն,— հառաչանքով խոսեց Վարդանը:

Երվանդը, որ կապույտ աչքերը տխրորեն գամել էր պղտոր ջրերի հոսանքին, ոչինչ չպատասխանեց:

— Թե որ գործներս հաջող գնան,— թերահավատորեն կարծիք հայտնեց Գառնիկը:

— Ինչո՞ւ պիտի հաջող չգնան,— ասաց Զավենը,— Միայն թե կարողանանք լավ նախապատրաստվել:

— Տղանե՛ր,— հանկարծ խոսեց Երվանդը,— եկեք վաղվանից ռեժիմ սահմանենք, ինչպես անենք, որ լավ սովորենք, թե չէ, մեզ ամռանը իսկի չեն էլ թողնի, որ միասին գնանք ամառանոց: Էն ժամանակ ինչպե՞ս կկարողանանք մեր կղզին գնալ:

— Ճիշտ ես ասում, բա ի՞նչ,— համաձայնեցին ընկերները:

— Իսկ մեր կղզում էնքան լավ կլինի,— հանկարծ երազանքի գիրկն ընկած, ինքնամոռացության մեջ խոսեց Երվանդը:— Է՜, ախր դուք չեք տեսել, չգիտեք, թե ինչքան լավն է մեր անմարդաբնակ կղզին: Էնտեղ մեծ-մեծ ծառեր են աճում, ծառերի վրա վայրի տանձ, խնձոր, ընկույզ և հազար ու մի տեսակ մրգեր... Էնտեղ մենք մի հատիկ ցորեն կցանենք, իսկ երկու տարի հետո կունենանք մի մեծ արտ... Դե տեսեք, կհասնենք մեր կղզին, ափ կիջնենք, Զավենը կհարցնի. «Որտե՞ղ ենք գտնվում»... Ես կպատասխանեմ. «Երևի անմարդաբնակ կղզում»: Վարդանը կասի. «Հարկավոր է զգուշանալ, այստեղ կարող են վայրենիներ լինել»... Գառնիկը կասի...

— Ես կասեմ,— մեջ մտավ Գառնիկը,— որ հարկավոր է մի բան ուտել:

— Մենք կգնանք որսի,— Գառնիկին հավանություն տալով շարունակեց Երվանդը:— Կորսանք մի վայրի այծ ու մի վարազ, ճանապարհին կհավաքենք ուտելու զանազան սննդարույսեր, որոնք





առատորեն աճում են մեր կղզում։ Մենք գետնից քարերի նմուշներ կհավաքենք, որոնցից կերևա, որ մեր կղզին հարուստ է քարածխով, ոսկով, երկաթով...

— Սպասիր,— նորից ընդհատեց Գառնիկը,— բա ուտե՞լը։

— Մի էս անհասկացողին տես, է՜,— հարձակվեց նրա՛ վրա Վարդանը, որը հրապուրվել էր Երվանդի պատմածով, դե որսի միս ունենք, հետո զանազան ուտելու սննդարար խոտեր, որոնցով հարուստ է մեր կղզին...միսը կխորովենք...

— Բա ջրալի ճա՞շ,— նորից բողոքեց Գառնիկը։— Ես ջրալի ճաշ շատ եմ սիրում, ո՞վ կեփի ջրալի ճաշ...

Գառնիկն այնքան համով ու եռանդով էր արտասանում «ջրալի ճաշ», որ տղաների բերնի ջուրը գնաց, բոլորն էլ միանգամից զգացին, որ շատ քաղցած են։

— Էսօր մամաս բորշ պիտի եփեր,— երազանքով ասաց Վարդանը։

— Ես շատ եմ սիրում բորշ,— բերանը ճպճպացնելով ասաց Գառնիկը։

— Ես չգիտեմ մեր տանը ինչ ճաշ է լինելու,— չգիտես ինչու, անհանգստացավ Զավենը։— Բա՛յց ինչ էլ որ լինի, կուտեմ, մեկ է։

Հետո տղաները սկսեցին խոսել այն մասին, թե ով ինչ կուզենա և ինչքան կկարողանա ուտել, եթե մեկը նրանց լսեր, ապա կկարծեր, որ գրուց են անում նշանավոր որկրամոլներ, սովից փախած միլիոնարի աժդահաներ, և ոչ թե չորրորդ դասարանի տղաներ։

— Իսկ կղզում ոչ ոք մեզ համար համեղ ճաշեր չի եփի,— վշտացած խոսեց Գառնիկը։

Այդ պահին բոլորին էլ թվաց, թե ամենալուրջ հարցը դա է։

— Ա՜յ, եթե մեզ հետ մի աղջիկ էլ լիներ,— վախեցած կարծիք հայտնեց Գառնիկը։

— Էդ էր պակաս,— ասաց Երվանդը։— Ո՞վ է տեսել աղջիկ նավարեկյալ, ո՞վ է տեսել, որ աղջիկը ընկնի անմարդաբնակ կղզի։ Ես ոչ մի գրքում այդպիսի բան չեմ կարդացել։

— Ինչ կա որ,— սրտապնդված այն բանից, որ իր վրա չծիծաղեցին, հակաճառեց Գառնիկը։— Եթե լավ աղջիկ լինի, կարելի է նրան նավարեկյալ դարձնել։

— Աղջիկները բոլորն էլ խաբարբզան են,- վրճռական տոնով հայտարարեց Զավենը։— Համ էլ՝ նվնվան։

— Չէ՛, ինչո՞ւ, լավ աղջիկներ կան,— պնդեց Գառնիկը,— բա լավ չի՞ լինի, եթե որսից կամ աշխատանքից գանք, տեսնենք, որ ջրալի ճաշ է եփված։

Գառնիկն այնպես սրտանց արտասանեց «ջրալի» բառը, որ այս անգամ խեղակինից բոլորի բերանի ջուրը գնաց։

— Դե ի՞նչ կա որ, էս ամառ, որ ճամբարում էինք, գնում էինք էքսկուրսիայի, մեզ հետ աղջիկներ կային։ Այսինքն աղջիկները տղաներից շատ էին ու ոչ մեկն էլ նվնվան չէր, ոչ էլ խաբարբզան։ Մեկի ծունկը փուշը բերծեց, էնքա՜ն արյուն գնաց։ Իսկ ինքը ծիծաղում էր, ասում էր՝ ոչինչ...

Բայց արդեն ուշ էր, տղաները վեր կացան, որ տուն գնան։ Գառնիկենց տունը ղալրոցի մոտ էր, առաջինը նա անջատվեց խմբից։ Բաժանվելիս, մի րոպե տղաներին պահելով, նա ասաց.

— Ա՛յ, օրինակ, մեր դասարանցի Սուսանը, էն, որ մեզ հարևան է։ Նա ոչ խաբարբզան է, ոչ էլ նվնվան։

— Հա՜, նա լավ աղջիկ է,— հաստատեց Վարդանը։— Նա իսկական տղայի նման է։

— Նրան կարելի է նավարեկյալ դարձնել,— շարունակեց Գառնիկը։

— Տեսնենք, ինչու չէ,— անորոշ պատասխանեց Երվանդը, և Գառնիկն ընկերներից բաժանվեց։

Քաղցը նրանց ստիպեց ավելի արագ քայլել։

Զավենը դեպի իրենց տուն ծռվելով, ասաց.

— Բայց լավ կլիներ, որսից գայինք, իսկ տաք, համեղ ճաշն արդեն պատրաստ լիներ։

Յոթերորդ գլուխ

## ԳԱՌՆԻԿԸ ՔՍԱՆ ՐՈՊԵ ԺԱՄԱՆԱԿ Է ԽՆԴՐՈՒՄ

«Տեսնենք, ինչու չէ», վերջին բառերն ասել էր Երվանդը, և Գառնիկն այդ համարեց համաձայնության նշան։

Նա տուն հասավ, ճաշեց, դպրոցից ուշանալու համար ընդունեց մոր հանդիմանությունները և տանից դուրս գալով, ծեծեց դիմացի բնակարանի դուռը։ Դա Սուսանենց տունն էր։ Սուսանն ու Գառնիկը միասին էին մեծացել և միասին էլ սովորում էին։ Հաճախ նրանք օգնում էին իրար, երբ այս կամ այն դասը պատրաստելիս մեկը դժվարանում էր։ Բայց այդ օրը Գառնիկը Սուսանենց տունն էր գնում ոչ դաս սովորելու և ոչ էլ շաշկի խաղալու համար։

Դուռը բաց արեց Սուսանի մայրը։

— Արի, Գառնիկ ջան, — անմիջապես սիրալիր ասաց նա, — Սուսանը ներսի սենյակում դասերն է պատրաստում։

Սուսանը սևագրություն էր արել թվաբանության խնդիրը և հիմա մաքուր արտագրում էր։ Գառնիկին տեսնելով, նա ասաց.

— Հիմա, հենց հիմա վերջացնեմ, շաշկի խաղանք։

—Իսկ դու մարդու բան ասե՞լ ես, որ ծնող են կանչել, – շշնջաց Գառնիկը։

— Չէ, ի՞նչ ես ասում, դու չե՞ս կարող ասել, ինչ է։ Չե՞ս ասելու։

— Ասելու եմ։

Քիչ հետո Սուսանը վերջացրեց գրելը, Գառնիկըն անմիջապես ասաց.

— Սուսան, ես քեզ մի գաղտնիք եմ ասելու, մարդու չե՞ս ասի։

— Իհարկե, չեմ ասի։

— Գիտես ինչ, Սուսան, սա շատ կարևոր բան է, համարյա պետական նշանակություն ունի, — ասաց Գառնիկը, որ լրջությունից այնպես էր չաղլիկ թշերը ուռցրել, որ քիչ էր մնում պայթեին։

— Պետակա՞ն, ի՞նչ ես ասում, — զարմացավ Սուսանը։

— Բա՛, իհարկե, ախր, մենք վերջիվերջո Ազեր կղզին պետք է նվիրենք պետությանը և դրա համար մեր անունները պետք է թերթերում գրեն, մեզ... — Գառնիկը միանգամից այնքան բան ասաց, որ ինքն էլ շշմեց։

— Ի՞նչ կղզի, ի՞նչ Ազեր...

— Ու դու էլ նավաբեկյալ կլինես։ Մենք բոլորս նավաբեկյալներ ենք։

— Ի՞նչ նավաբեկյալ, ո՞վքեր եք դուք, — Սուսանը այնպես էր զարմացել, որ նույնիսկ ականջներին չէր հավատում։

Դժվարը սկսելն էր։ Գառնիկը սկզբից մինչև վերջ, մինչև ճաշ եփելու պատմությունն ու Երվանդի այն խոսքը, թե՝ «Տեսնենք, ինչու չէ», պատմեց Սուսանին։

— Ասում ես կղզում առյո՞ւծ կա, — վախեցած հարցրեց Սուսանը։

Դե մենք զինված կլինենք։

— Փչում ես, էդ Երվանդը բոլորին էլ խաբել է։

— Չէ, ի՞նչ ես ասում, նա իր օրագիրն է ցույց տվել, նա կղզուց մի կտոր հանքաքար է բերել, կղզում ոսկու հանքեր կան։

— Բա որ խեղդվե՞ք ծովում...

Սուսանը կարծես համ չէր հավատում, համ էլ միաժամանակ վախեցած էր։

— Ես մամայիդ կասեմ, — վերջապես հայտարարեց նա։ — Անպայման մամայիդ կասեմ, թե չէ կգնաք, և մի սարսափելի բան կպատահի ձեզ հետ։

— Վա՛յ, չէ, Սուսան, ջանս...

— Չէ՛, պիտի ասեմ։



— Դե գոնե հիմա մի ասի, հո շտապ չի, ամառը պիտի գնանք...

— Չէ՛, հիմի պիտի ասեմ։ Հենց հիմի...

Սուսանը նույնիսկ տեղից բարձրացավ, ասես հենց նույն վայրկյանին պատրաստվում էր գնալ Գառնիկի մոր մոտ։

— Համ էլ դրա երեսից դասեր չեք սովորում, վատեր եք ստանում։ Թող Երվանդը կզգու տեղը ասի՝ մեծերը գնան, էլի հայրենիքին օգուտ կլինի...

Գառնիկի բոլոր թախանձանքները, նույնիսկ այն սպառնալիքը, թե դասարանով մեկ Սուսանին խաբարբզան կհայտարարի, բանի տեղ չանցան։ Վերջիվերջո Գառնիկը ասաց.

— Լավ, Սուսան ջան, մենակ մի բան խնդրեմ, մի փոքրիկ բան...

— Ասա։

— Խնդրում եմ գոնե քսան րոպեից շուտ չասես մամայիս։

— Ինչո՞ւ։

— Խնդրում եմ էլի, ի՞նչ կլինի։

Մի փոքր մտածելուց հետո, Սուսանը վերջապես այդ մի հարցում Գառնիկին զիջեց, չնայած որ չէր հասկանում, թե ինչ նշանակություն կարող էր ունենալ քսան րոպեն։ Մինչդեռ Գառնիկը դա լավ գիտեր։ Ասում են. «Դող՝ սիրտը դող»։ Նա Սուսանենց տնից դուրս եկավ և մտավ տուն թե չէ, նետվեց դեպի անկողինը, պառկեց ու քնած ձևացավ։

Քիչ հետո նա լսեց դռան զանգի ձայնը։ «Սուսանն է, —մտածեց նա և ավելի կծկվեց վերմակի տակ։—Թող չսոր մի կերպ անցնի, առավոտը մի բան կանեմ»։ Բայց դե առավոտը ի՞նչ պիտի աներ, մի գքշերով դեպքերը հետաձգելուց ի՞նչ օգուտ...

(Շարունակելի)

# ՈՒԶՈՒՄ ԵՄ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գյուղում ոչ ոք այնպիսի դեղձենիներ չուներ, ինչպես Թաթոս ամին՝ դպրոցի պահակը։

Թաթոս ամու պարտեզը դպրոցի մոտ էր, դպրոցի բակի կարճ ցանկապատի հետևը։ Գարնանն այդ պարտեզում ամենից վաղ էին ծաղկում դեղձենիները։ Մայիսին, երբ մեղմ քամուց օրորվում էին մատղաշ ծառերը, սկսվում էր ծաղկաթափը։ Սպիտակաերիզ-վարդագույն ծաղիկների թերթիկները ձյան փաթիլների նման թռչում, խաղում էին օդում ու հանդարտ իջնում դպրոցի բակի սալահատակին։ Խռոված մեղուները, որ մինչև այդ պարտերով թռչում էին ծաղկած դեղձենիների շուրջը, բզզալով հեռանում էին դեպի գետափի այգիները, ուր այս ու այնտեղ դեռ սպիտակ ու վարդագույն խարույկների նման բոցկլտում էին զանգրահեր ծառերը։



Առաջին կիսահաս դեղձերը Թաթոս ամու փոքրիկ պարտեզից էին դո՛ւրս գալիս, կավե խոր ափսեով նա էր դպրոց բերում։ Մտնում էր ուսուցչանոց, հնաձև դարչնագույն գլխարկը հանում, աչքերում բարի ժպիտը, իսկ ճակատին՝ քրտինքի խոշոր կաթիլները պլպլացնելով ցածրաձայն ասում.

— Անուշ արեք, թազա նուբար ա։

• • •

Դասարանի լուսամուտից նայելիս ծառերի կլոր գլխարկներն էին միայն երևում, գարնանը դրանք վարդագույն էին, ամառը կանաչ, իսկ աշնան դեմ, երբ դեղձերը հասունանում ու դեղնում էին, ծառերի կանաչի մեջ այս ու այնտեղ ուրախ ժպտում էին ոսկեգույն ցոլքեր։ Սեպտեմբերի կեսերին դա-



սարանում հանգիստ նստելն անկարելի էր դառնում, շատ աշակերտների գլուխներում քերականության կանոնները շփոթվում էին, թվաբանության խնդիրները խճճվում, աշխարհագրության քաղաքներն ու գետերն իրար էին խառնվում, մնում էր միայն մի քիչ բուսաբանություն։ «Դեղձ, դեղձ», յուրաքանչյուրի ականջում հնչում էր այդ «բուսաբանությունը»։ Դասամատյանում ավելանում էին երկուսները, իսկ փորձված դասատուներն ասում էին.

— Ոչինչ, դա Թաթոս ամու դեղձի հիվանդությունն է։ Սպասեցեք մի տասն օր, բոլոր դեղձերը կհասունանան, տղաների աչքերը կլիանան, երկուսները կվերանան...

* * *

Բայց այդ տարին «Թաթոս ամու դեղձի հիվանդությունը» համաճարակ դարձավ։ Ձմեռը սաստիկ ցուրտ էր եղել, բոլոր պարտեզներում, էլ չեմ ասում այգիների մասին, ցուրտը տարել էր ծիրանիները, դեղձենիներն ու մյուս պտղատու ծառերը։ Միայն «հրաշքով» ազատվել էին Թաթոս ամու դեղձենիները, որ գարնանն առաջվա նման ծաղկեցին, ամռանը կանաչ տերևներ հագան, իսկ սեպտեմբերին արդեն ժպտում էին ոսկե դեղձերով։ Էլ ինչպե՞ս դիմանային դպրոցի տղաները. ինչպե՞ս չնայեին բաց պատուհաններից, չհուզվեին, չաղմկեին դասամիջոցներին ու դասերի ժամանակ, ինչպե՞ս երկուսներ չստանային։

Բայց եթե ամեն ինչ դրանով վերջանար, ես այս պատմությունը չէի էլ պատմի։ Վերջիվերջո Թաթոս ամին կքաղեր իր գայթակղիչ դեղձերը, այգիներում կհասներ-կժպտար Արարատյան դաշտի մարգարիտը՝ ոսկեգույն խաղողը, որ այդ տարին էլ առատ էր ամեն տարվա նման, կամաց-կամաց դեղձի հմայքը կխամրեր, կանհետանար իր հետ տանելով հուզմունքը, աղմուկն ու երկուսները։

Բայց ամեն ինչ դրանով չվերջացավ։

* * *

Ոչ ոք չէր կարող մրցել Հայկազի հետ՝ ո՛չ լողալու, ո՛չ վազելու, ո՛չ թռչելու, ո՛չ կռվելու, մի խոսքով, ոչ մի գործի մեջ։ Հինգերորդ «բ» դասարանում Հայկազն արդեն հաստատել էր իր անվիճելի գերիշխանությունը։ Հինգերորդ «ա»-ի տղաները նույնպես վախենում էին նրանից, իսկ գյուղի դպրոցում ավելի բարձր դասարաններ դեռևս չկային։

Աշակերտների մեջ Հայկազի համար երկու հեղինակություն կար միայն։ Մեկը երկրորդ տարեցի Կարոն էր, Հայկազից մի քանի տարով մեծ մի տղա, շատ ուժեղ, շատ խոշոր, շատ ծույլ։ Կարոն բարեհոգի էր, կռիվ չէր անում, բայց Հայկազը գիտեր, որ նա իրեն չի ծեծում, որովհետև ալարում է։ Մյուսը՝ Սոնիկն էր, դասարանի ավագը, մի փոքր սրաքիթ աղջիկ, որին իր մաքրության, լավ սովորելու, բարության ու ընկերասիրության համար բոլորը շատ էին սիրում։ Դասարանի կարգապահության գործում Սոնիկը շատ խիստ էր ու, Հայկազին թվում էր, թե իր դասընկերները նրանից վախենում են։ Մի անգամ, երբ Սոնիկը Հայկազին նկատողություն արեց, Հայկազը փորձեց նրան ծեծել, բայց բան դուրս չեկավ։ Սոնիկն այնպես ճչաց նրա վրա, որ Հայկազը շփոթվեց.

— Հանի՛ր վզկապդ, շո՛ւտ:

Հայկազի համար վզկապը նշանակություն չուներ: Նա իսկի հազարից մի անգամ վզկապ չէր կապում, բայց այսօր ոչ մի կերպ չէր ուզում ու այդպես էլ չբաժանվեց վզկապից:

Սոնիկի հետ ունեցած ընդհարումը լցրեց ամենքի համբերության բաժակը: Բոլորը վրդովվեցին: Հայկազը դուրս եկավ դասարանից, միջանցքում կանգնեց ու դեռ լսում էր նրանց աղմուկը: Նա չէր հուզվել, ընդհակառակը, մի անիմաստ ժպիտ կար նրա դեմքին:

— Շատ վեջս է,— ասաց արհամարհանքով ու շվշվացնելով ցած իջավ երկրորդ հարկից:

Դպրոցի բակում նա հանդիպեց Թաթոս ամուն, որը կավե ափսեով նորահաս դեղձեր էր տանում ուսուցչանոց: Հայկազը խեթ-խեթ նայեց դեղձերին: Ծերունին գրպանից երկու դեղձ հանեց ու նրան մեկնելով ասաց.

— Առ, բալամ, աչքդ թող վրեն չմնա:

Հայկազը հափշտակեց ձվի մեծության ոսկեգույն դեղձերը և տեղն ու տեղը երկուսն էլ կերավ: Թաթոս ամին գնաց, իսկ Հայկազի աչքերն ակամայից դարձան դեպի ցանկապատը, որի հետևից կարծես գլխով էին անում մատղաշ դեղձենիները:

* * *

Երեկո էր: Ակումբն ու ընթերցարանն այդ օրը փակ էին: Գյուղի փողոցները լուռ էին ու դատարկ: Հոգնած կոլտնտեսականներն արդեն տներն էին ցրվել: Վաղը լուսադեմին նրանք նորից այգիներն էին գնալու: Միայն ձորում, ջրաղացի մոտ լույսեր էին վառվում, գետի խշշոցի հետ լսվում էին խոսակցության ձայներ:

— Ա՛յ տղա, Հայկա՛զ, հե՜յ...

— Ա՛յ տղա, էշը բեր, էշը, ալյուրը տանենք:

Ջրաղացի ներսում մի քանի մարդ պատերի տակ դրված քարերին նստած, բարձրաձայն զրուցում էին: Այդտեղ էին նաև Հայկազն ու նրա հայրը՝ Միսակը: Նրանք իրենց ցորենն արդեն աղացել էին, այժմ պարկերը դուրս էին տանում էշին բարձելու: Հայկազի հայրը ջրաղացպան Համոյին հարցրեց.

— Հիմի ո՞ւմ աղունն ես լցնում:

— Թաթոս ամու:

— Հա, լավ ես անում, մեղք ա հալիվորը:

Թաթոս ամին հենց նոր էր բերել իր ցորենը, բայց հերթի սպասող գյուղացիներից ոչ մեկը չբողոքեց, որովհետև խոսքը միայնակ ծերունու մասին էր, որին գյուղում բոլորն ակնածում էին:

Երբ Հայկազն ու հայրը տուն էին գնում, Հայկազի գլխում կամաց-կամաց ձևավորվում էր վաղուց փայփայած ծրագիրը: «Մի պարտեզ ընկնեմ, հետո ես գիտեմ,— մտածում էր նա,— Թաթոս ամին, մեկ է, մինչև լույս ջրաղացում կլինի»:



* * *

Երբ Կարոն ու Հայկազը ցանկապատից պարտեզ թռան, Թաթոս ամու տանը լույս չկար: Շունը վեր կացավ, հաչեց, բայց Հայկազին ու Կարոյին ճանաչելով ուրախացած փաթաթվեց նրանց ոտքերին ու սկսեց խաղալ:

— Կարո,— ասաց Հայկազը,— դու էն ծառը բարձրացիր, ես՝ էս:

— Դե, էդքանն ինչ պտի անես,— ծույլ-ծույլ ասաց Կարոն,— դու քաղիր, ծոցերդ լցրու, կտանենք կուտենք:

Բայց Հայկազը Կարոյի հետ համաձայն չէր:

— Մենակ էսօրվա համար հո չի,— ասաց նա,— կտանենք, այգիներում կպահենք, ամեն օր կուտենք...

Լուսադեմին, երբ Թաթոս ամին տուն վերադարձավ, պարտեզում ամեն ինչ տակ ու վրա էր արված:

Դեղձենիների տակ մարգերը տրորված էին, վարունգի թաղերը ճմլած, չորս կողմը թափված էին հասած ու դեռ խակ դեղձերը, իսկ որ ամենավատն էր, թեր կոտրած թռչունի նման խեղճացել էր Թաթոս ամու երեք տարեկան մատղաշ դեղձենին, որն այս տարի առաջին բերքն էր տվել՝ չորս հատ խոշոր դեղին դեղձ։

Խեղճ ծերունին շփոթեց։ Նա երկու ձեռքով բարձրացրեց ջարդված ծառը ու զարմացած ինքն իրեն ասաց.

— Յա՛, էս ի՞նչ բան է։

Ծունր կլանչում էր, փաթաթվում ծերունու ոտքերին, բայց Թաթոս ամին չէր նկատում նրան, հմայվածի նման նայում էր կոտրված ծառին ու տնքում.

— Վա՜յ, քո կուռը կոտրի, հա՜...

* * *

Առավոտյան Թաթոս ամին հարբածի նման էր։ Դպրոց եկող երեխաները զարմացած նայում էին նրան, իսկ նա նստել էր ցանկապատի տակ ու խոսում էր իր ոտքերի առաջ կծկված շան հետ։

— Ա՛յ Զալո, քա դու չամաչեցի՞ր, քա գետինը չմտա՞ր, քա էլ ինչ ես հաց ուտում, յանի։

Դպրոցի դիրեկտորը եկավ։ Նա Թաթոս ամուն երբեք այդ վիճակում չէր տեսել։ Հավաքված աշակերտների միջով գնաց ու կանգնեց ծերունու առաջ։

— Թաթոս ամի՛։

— Հաջա՛ն։

— Հիվանդ հո չե՞ս։

— Չէ, բալամ։

— Բա ի՞նչ է եղել։

Աշակերտները դիրեկտորին պատմեցին եղելությունը։ Դիրեկտորը հուզվեց, բայց ոչինչ չասաց։

* * *

Դպրոցի աշակերտների և ուսուցիչների ընդհանուր ժողովը վերջանալու վրա էր։ Դիրեկտորը խոսեց, ուսուցիչները խոսեցին, աշակերտները՝ նույնպես։ Սոնիկն իր նեղլիկ աչքերը պլպլացնելով ասում էր.

— Դա արհկայություն է, ա՛յ [illegible]...

Միայն Թաթոս ամին չէր խոսում։ Նստել էր լուռ, միամիտ, նեղացած, զարմացած...

Բոլորի համար պարզ էր, որ գիշերվա [illegible] երեխաների գործն էր, պարտեզի գիշերային այցելուները ոչ այնքան տարել էին, որքան փչացրել։

— Ես շատ ցավում եմ,— ասաց դիրեկտորը,— բայց այս դեպքն անհետևանք թողնել չեմ կարող։ Ես սխալվեցի, որ կարծում էի, թե հանցագործները կզղջան, կխոստովանեն։ Այժմ տեսնում եմ, որ պետք է հայտնեմ միլիցիային։

Դահլիճի խորքից մի ձեռք բարձրացավ, հետո ոտքի կանգնեց մի հաղթանդամ պատանի։ Կարոն էր։

— Ես ու Հայկազն արինք,— տնքաց նա ու փուլ եկավ նստարանին։

Դահլիճում անասելի աղմուկ բարձրացավ։

Հայկազն աննկատ դուրս ծլկեց դահլիճից։

* * *

Արդեն հինգ օր էր Հայկազը դպրոց չէր գալիս։ Նա փորձել էր Կարոյին ծեծել, բայց Կարոն նրան այնպես էր դնքսել, որ Հայկազի կռվելու ախորժակը փակվել էր։

Հայկազի հայրը՝ Միսակը, Թաթոս ամու մոտ եկավ, հազար ու մի ձևով ներողություն խնդրեց, փող առաջարկեց վնասի դիմաց, բայց Թաթոս ամին տխուր ժպտաց ու նրան ճանապարհ դրեց ասելով.

— Գնա, բալամ, գնա, իմ ծառն ա փչացել, քու՝ տղեն...

Վեցերորդ օրը դպրոցի դիրեկտորն ու Սոնիկը Հայկազենց տուն գնացին։

Հայկազն այդ ժամանակ կտրանն աղավնի էր թռցնում։ Հայրը տանը չէր, մայրը «ոտ ու ձեռ ընկավ» դիրեկտորին հյուրասիրելու, բայց դիրեկտորը շնորհակալություն հայտնեց ու ասաց.

— Կանչեցեք Հայկազին։

Հայկազն եկավ։ Նրա ձեռքին մի սպիտակ աղավնի կար, դեմքին՝ ինքնաբավական ժպիտ։

— Ի՞նչ ես ուզում, է՛,— գոռաց նա մոր վրա,



բայց դիրեկտորին տեսնելով հանկարծ բաց թողեց աղավնին և ուզեց փախչել։

— Կա՛նգ առ,— հրամայեց դիրեկտորը,— կա՛նգ առ. լսո՞ւմ ես...

Հայկազը կանգնեց՝ սենյակի բաց դռների մոտ։ Աղավնին օդում թրթռաց, թրթռաց ու տղայի գլխի

ես,— ասաց դիրեկտորը,— լաց մի լինի, միևնույն է, ոչ ինձ, ոչ էլ Սոնիկին չես կարող համոզել։ Գնանք Սոնիկ։

Սոնիկն ու դիրեկտորը վեր կացան։ Հայկազը դեռ կանգնած էր դռան առաջ։

— Ո՞ւր եք գնում,— տարակուսած հարցրեց նա։

— Քո գործը չի,— զայրացած պատասխանեց Սոնիկը։

— Բա չե՞ք ուզում, որ դպրոց գամ։

— Ո՛չ,— ասաց դիրեկտորը։

— Ուրեմն չեք ուզում, է՛լի։

— Ո՛չ։

Դիրեկտորն ու Սոնիկը միջանցք ելան։ Հանկարծ Հայկազը թափով շուռ եկավ ու ձայն տվեց.

— Ընկեր Սուխիասյան։



վրայով դուրս թռավ թևով ապտակելով նրա երեսին։

— Ի՞նչ եք ուզում,— հանկարծ ճչաց Հայկազը,— ի՞նչ եմ արել, մի երկու դեղձ եմ կերել, պա՞հ. .

— Գո՛ղ,— չհամբերեց Սոնիկը։

— Սպասիր,— նրան սաստեց դիրեկտորն ու Հայկազին դիմելով ասաց,— ես քեզ ավելի խելոք էի կարծում, մի՞թե չես հասկանում, որ քանի դեղձը չէ…

Այդ վայրկյանին դիրեկտորի դեմքին այնպիսի արհամարհանք կար, որ Հայկազը երբեք չէր տեսել։

— Ես գող չեմ, ես գող չեմ,— ճչաց նա ու ոտքերը գետնին խփելով հանկարծ սկսեց լաց լինել։

— Դու նախ և առաջ փոքրոգի ու անխելք տղա

— Դե՞։

— Ախր ինչո՞ւ չեք ուզում, որ դպրոց գամ։ Հիմի մյուսներն ինձնից լա՞վ են։

— Իհարկե։

— Որ գայի՝ կտեսնեիք, ՝թե ով է լավը, բայց դե որ չեք ուզում…

— Իսկ դու ուզո՞ւմ ես։

Հայկազը կմկմաց.

— Իմ ուզելն ինչ, որ դուք չեք ուզում…

Դիրեկտորը խիստ ասաց.

— Ասա՛, ուզո՞ւմ ես, թե՞ ոչ։

Հայկազի աչքերում այս անգամ իսկական արցունքներ երևացին։

— Ուզում եմ,— ցածրաձայն ասաց նա։



# ԱՎԵՏԻՔ ԻՍԱՀԱԿՅԱՆ

Ձեզանից ո՞վ չի լսել այս անունը, ո՞վ չի կարդացել նրա սքանչելի ստեղծագործությունները։ Ամեն անգամ, երբ նա փողոց էր դուրս գալիս, երեխաներն իսկույն շրջապատում էին նրան, իսկ նա մանուկներին շատ էր սիրում։ Նա մեր սիրելի պապիկն էր, մեր պատվավոր պիոները։ Իսահակյանը հայ գրականության ամենանշանավոր դեմքերից մեկն էր։ Աշխարհի բոլոր ծայրերում գիտեին, սիրում էին նրան և թարգմանում նրա գործերը։ Իսկ «Աբու-Լալա Մահարի» պոեմը թարգմանվել է նույնիսկ ճապոներեն, տպագրվել հեռու Հնդկաստանում։ Մեծ կոմպոզիտորները նրա խոսքերի վրա երգեր են գրել։ Իսահակյանը երկար ու սքանչելի կյանք ապրեց և շատ բան արեց մեզ համար, բայց դաժան մահը հոկտեմբերի 17-ին մեծ բանաստեղծին խլեց մեր շարքերից։ Մենք միշտ կհիշենք նրան այնպես, ինչպես նա շրջում էր մեր քաղաքում, միշտ ժպտուն ու միշտ երեխաներով շրջապատված։

# Ն Ր Ն Խ
## Մեծ բարե



Հ. ԲԱԳՐԱՏՅԱՆ

Կիևի՝ կենտրոնական փողոցներից մեկում, թուջե բարձր պարսպի ետևում, կարելի է տեսնել մի մեծ, գեղեցիկ շենք, որն ամբողջությամբ թաղված է խիտ կանաչի մեջ։

Դա Ուկրաինայի Լենինյան Կոմերիտմիության 20-ամյակի անվան Պիոներների պալատն է, խընդության պալատը, հետաքրքիր զբաղմունքների, մանկական հայտնագործությունների, երեխաների աշխատանքի ու հանգստի աշխարհը։

Պալատ են հաճախում մինչև երեք հազար հինգ հարյուր երեխա։ Այստեղ են դաստիարակվել Սովետական Միության հերոսներ Գուլյա Կորոլյովան ու Նատաշա Մեկլինան, գրումայստեր Բրոնշտեյնը և շատ ուրիշ անվանի մարդիկ։

Մեր զրույցն այսօր այնքան պալատի մասին չէ, որքան երեխաների այն մեծ բարեկամության մասին, որը գոյություն ունի այդ հրաշալի տան հարկի ներքո։

Ահա պալատի ընդարձակ սենյակներից մեկը՝ պիոներական բարեկամության սենյակը։ Այստեղ ցուցադրվում են եղբայրական ռեսպուբլիկաների, ժողովրդական դեմոկրատիայի ու արտասահմանյան երկրների երեխաներից ստացված նվերները։

Երևանի և Կիևի պիոներների պալատների միջև երկար տարիների բարեկամության մեծ կապ է հաստատված։

Այդ մասին է պատմում Կիևի Պիոներների պալատի ուսումնական մասի վարիչ Նինա Քոչարյանը.

— Ե՞րբ և ինչպե՞ս է սկսվել մեր բարեկամությունը,— դա դժվար է անգամ հիշել։ Ամեն ինչ կարծես ինքն իրեն ստացվեց։

— Կարելի է ասել, որ այդ բարեկամությունը սկսվեց այն հիշարժան օրերից, երբ մենք տոնում էինք Ուկրաինայի՝ Ռուսաստանի հետ միանալու 300-ամյակը,— ավելացնում է պալատի դիրեկտոր Ալեքսեյ Ալեքսանդրովիչ Մարինյակոն։ — Այդ ժամանակ մենք Երևանից շատ նվերներ ստացանք։ Հետո մեր միջև նամակագրություն հաստատվեց։

Իսկ անցյալ տարի մեզ մոտ եկան Հայաստանի մայրաքաղաքի Պիոներների պալատի ներկայացուցիչները։

Իսկ այս տարի վաղ գարնանը Երևան եկավ Կիևի պատանի ավիոմոդելիստների մի խումբ։

Եվ ինչպիսի՜ հետաքրքիր ու արագաթռիչ սավառնակների մոդելներ էին ցուցադրում այդ ժամանակ ուկրաինացի և հայ երեխաները։ Կիևցիները



Նկ. ԳՐ. ԽԱՆԱՂՅԱՆԻ

իրենց հետ նույնիսկ ֆոտոալբոմ էին բերել, որով ծանոթացնում էին իրենց պալատի աշխատանքների հետ։

Կիևի Պիոներների պալատում այս տարի բացվեց Երևանի երեխաների աշխատանքների ցուցահանդեսը։ Պալատում հավաքվել էին շատ երեխաներ ու նրանց ծնողները։

Պատանի այցելուները և նրանց ծնողները դիտեցին ցուցահանդեսը։ Որքա՜ն հիանալի գործեր կային այնտեղ. և՛ ամենանուրբ ձեռագործեր, և՛ բնությունը պատկերող հրաշալի նկարներ, և՛ շընորհքով պատրաստած քանդակներ։ Որքա՜ն աշ-



## ...ՆԵՐԻ ...կամությունը



խատանք, համբերություն, տաղանդ ու գիտելիքներ են հարկավոր այսքան գեղեցիկ կտավներ, քանդակներ ու ձեռագործեր ստեղծելու համար։

Ցուցահանդեսը բոլորին դուր եկավ։ Հատկապես գրավիչ էին Սամվել Ղազարյանի ու Էդիկ Հարությունյանի քանդակագործական աշխատանքները, Ռուբիկ Ղևոնդյանի ու Անատոլի Պապանյանի նկարները, Անետա Այդինյանի ու Զարուհի Փափազյանի ձեռագործերը և ուրիշ շատ գործեր։

Այցելուներից շատերը, ինչպես մեծերը, այնպես էլ փոքրերը, տպավորությունների գրքում շատ ջերմ տողեր գրեցին։ Ահա թե մի խումբ երեխաներ ինչ են գրել գրքում. «Մեզ՝ 138-րդ դպրոցի 3«ա» դասարանի պիոներներիս, ցուցահանդեսը շատ դուր եկավ։ Մենք պիոներական ողջույն ենք հղում Հայաստանի պիոներներին»։

«Շնորհակալություն այն բանի համար, որ մեզ հնարավորություն տրվեց ծանոթանալու Երևանի երեխաների հիանալի գործերին», — գրում են մի խումբ ծնողներ։

Իսկ ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու Շելեստովան այսպիսի մի գրություն է թողել գրքում. «Դիտելով Երևանի Պիոներների պալատի ցուցահանդեսը մենք շատ ուրախ ենք նշելու, որ Երևանի երեխաները այդպես աշխատասեր ու տաղանդավոր են»։

Երևանի դպրոցականների գործերը բարձր գնահատեցին Կիևի Պետական գեղարվեստական ինստիտուտի պրոֆեսոր Գելեմսկին, նույն ինստիտուտի ավագ դասախոս Դենիսովը և շատ ուրիշներ։

Գնալով աճում ու ամրապնդվում է երկու եղբայրական ռեսպուբլիկաների մայրաքաղաքների պիոներների բարեկամությունը։

Այս ամառ Երևանի Պիոներների պալատի նկարչական, քանդակագործական և այլ խմբակների անդամների պատվիրակությունը մեկնեց Կիև։ Իսկ մոդելիստներն ու շախմատիստները մեկ ամիս հանգստացան Ուկրաինայի պիոներական ճամբարներից մեկում։

Կիևից նույնպես հյուրեր եկան Երևան։ Հայ պիոներների հետ միասին նրանք հանգստացան մեր ճամբարներում, բարձրացան լեռնային գառիթափներով, շրջեցին մեր անտառների ստվերում, տեսան կապուտակ Սևանը, մեր պաղ-պաղ աղբյուրներն ու աղմկալի գետերը…

Նրանք այստեղից մեկնեցին մեծ տպավորություններով և տարան այն բարեկամության, այն մեծ զգացմունքների ջերմության մի մասը, որը արևային Հայաստանի երեխաները տածում են Ուկրաինայի երեխաների նկատմամբ։



Երևանի պիոներների պալատի նկարչական խմբակի ղեկավար Գ. ՂԱԶԱՐՅԱՆԸ Կիևի դպրոցականներին ծանոթացնում է Երևանի պիոներների պալատի կերպարվեստի բաժնի ցուցահանդեսի էքսպոնատների հետ



# ԹԱՆԿԱՐԺԵՔ ՆՎԵՐ

Փետրվարյան ցուրտ օրերից մեկն էր: Երևանի № 1 գիշերօթիկ միջնակարգ դպրոցի սաները ճեմասրահում խաղալիս, պատուհանից նկատեցին արկղներով բարձած բեռնատար ավտոմեքենան, որը դանդաղ մոտենում էր դպրոցին: «Ըլի տեսնես ինչ նոր բան բերեցին», անցավ մի քանիսի մտքով:

— Ի՞նչ եք բերել, Սպարտակ քեռի,— դիմեցին նրանք մեքենայի վարորդին:

— Լաբորատորիայի գույք է, նվեր ենք ստացել,— ասաց նա և սկսեց հետևել, որպեսզի արկղները զգուշությամբ իջեցնեն:

Հանկարծ վեցերորդ դասարանցի Անդրանիկը նկատեց արկղի վրա եղած տարօրինակ մակագրությունը, նայեց երկրորդ, երրորդ արկղին...

— Տղանե՛ր,— բացականչեց նա,— այս արկղներն ստացվել են Եգիպտոսից:

— Չէ՛ Հնդկաստանից է,— կարծիք հայտնեց Ժորան:

— Ինչպե՞ս չէ, Հնդկաստանից է... Չինաստանի՛ց է,— խոսակցությանը խառնվեց Համլետը:

Ծուտով ստաղձագործների խմբակի անդամները սկսեցին բացել արկղները և խնամքով փաթաթված էքսպոնատները դասավորել դահլիճի սեղանների վրա:

Չինաստանից ստացված նվերների լուրը շուտով տարածվեց դպրոցում:

Այդտեղ կային թռչունների և կենդանիների խրտվիլակներ, մարդու և կենդանիների անատոմիային վերաբերող էքսպոնատներ, զանազան պրեպարատներ:

Երեխաները հարցերի տարափ էին տեղում ֆիզիկայի և բնագիտության դասատուների գլխին: Վերջինները պատասխանում էին, իսկ երբեմն էլ ուղղակի ասում.

— Մեծ անաք, ամեն ինչ կսովորեք և կիմանաք:

Աշակերտների մի խումբ ուշադրությամբ լսում էր բնասերների խմբակի ավագ Հակոբին:

— Տեսնո՞ւմ եք, թե Չինաստանը ինչքան օգտակար հանածոներ ունի,— ասաց նա:

— Ես դասագրքում չեմ կարդացել,— ասաց Լուսիկը:

— Խելքին նայեք,— ասաց Հակոբը:— Դասագիրքը ինչքա՞ն կտա, այնքան, ինչքան մտքիդ տարողությունն է: Դու էլ փորձիր ուրիշ գրքեր կարդալ:

— Հակոբը ճիշտ է ասում,— մեջ ընկավ Լաուրան:

— Ծատ որ հավատակես, քեզ Չինաստան կտանի, որ իր աչքերով հաստատի,— կատակեց Անդրանիկը:

— Դրա կարիքը չկա: Ապացուցելու համար գրքեր շատ կան, ես որ ասում եմ հավատացեք,— խոսեց Հակոբը:— Ա՛յ, սա երկա՞թ է՝ երկաթ է: Քարածո՞ւխ է՝ իհարկե: Դե, սրանք էլ ազնիվ և հազվագյուտ մետաղներ են՝ ոսկի, արծաթ, պլատին, վոլֆրամ: Գնա, թե ծայրին հասնես:

Դեռ երկար ժամանակ աշակերտներն հարցնում ու վիճում էին: Ապա դաս պատրաստելու ժամը սկսվեց: Նրանք գնացին հաջորդ օրվա դասերը պատրաստելու:.

* * *

Աշակերտներն ու դասատուները ամեն երկուշաբթի, չորրորդ դասից հետո հա-

վարվում են ճեմասրահում:

Այդ երկուշաբթի, հերթապահ դասատուն հայտարարեց, որ դպրոցի աշակերտները և ուսուցիչները նամակ են ուղարկել Պեկին քաղաքի № 1 միջնակարգ դըպրոցի աշակերտներին և ուսուցիչներին:

— Բոլորդ գիտեցիք այն հարուստ կահավորումը, որը Չինաստանի մայրաքաղաքի աշխատավորներն ուղարկել են Հայաստանի դպրոցներից մեկին՝ մեր դպրոցին:

Դպրոցի աշակերտական կազմակերպության նախագահ Անդրանիկ Ստեփանյանը կարդաց նամակը.

«Պեկին քաղաքի № 1 միջնակարգ դպրոցի աշակերտներին և ուսուցիչներին:

Հարգելի, սրտակից բարեկամներ.

Պեկինի աշխատավորների նվերը մեզ անչափ ուրախություն պատճառեց: Այդ նվերը չին և սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության մի նոր ապացույց է: Պատմությունից ծանոթանալով Չինաստանի անցյալին, շատ ենք ուրախանում մեր մեծ դաշնակից չին ժողովրդի հնագույն կուլտուրայով: Այժմ ավելի ենք ուրախանում, տեսնելով ձեր ամենօրյա հաջողությունները: Ցանկանում ենք, որ ազատ և մեծ Չինաստանը այսուհետև ևս միշտ բարձր պահի ազատության և խաղաղության դրոշը»:

Հետո նամակում ասվում էր, որ Երևանի գիշերոթիկ № 1 միջնակարգ դպրոցում ամեն ինչ ստեղծված է ուրախ և ապահով կյանքի համար: Սաները շրջապատված են մեծ հոգատարությամբ, դպրոցը դարձել է երեխաների երկրորդ ընտանիքը:

«Սիրելի չին բարեկամներ,— ասվում էր նամակի վերջում:— Արևավառ Հայաստանից ուղարկում ենք ձեզ մեր սրտի խորքից բխող բարեկամական ողջույնը: Հանձին ձեզ՝ ողջունում ենք բոլոր չին դպրոցականներին: Տարածությամբ այդքան հեռու եք մեզնից, բայց մեր սրտերին անչափ մոտ եք»:

Անդրանիկը ավարտեց ընթերցումը, հայացքը նորից ուղղեց աշակերտներին, կարծես կամենում էր նրանց դեմքերին կարդալ նամակի թողած տպավորությունը:

Բոլորի հայացքներն ասում էին. «Լավ է... Համաձայն ենք...»:

Բ. ՄԻՐԱՔՅԱՆ

Երևանի № 1 Գիշերօթիկ դպրոցի ուսմասվար



Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

# Ջրաղացպանն ու ջահելները

Ս. ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

(Ըստ հայ ժողովրդական զրույցի)

Ժամանակով մի գյուղում ապրում էր մի բարի ջրաղացպան։ Ամբողջ օրը նա գլուխը կախ աշխատում էր. քարն էր սրում, չախչախն ուղղում, ջուրը կապում կամ կտրում, իսկ ազատ ժամերին աղունավորների համար կրակ էր վառում, ջաղաց-բաղարջ թխում։ Մեկ-մեկ էլ վերցնում էր իր հին սրինգն ու նվագում։ Շատ աշխատելուց նա ծերացել էր, ու մեջքին մի կուզ էր առաջացել։

Բարի ջրաղացպանն ամեն առավոտ իր բաժին ցորենից մի բուռ գցում էր ջուրը, որ ձկներն ուտեն։

Մի գիշեր, երբ նա մենակ է լինում ջրաղացում, դրսից հետևից ուրախության ձայներ է լսում ու դուրս գալիս բակ։ Դուրս է գալիս թե չէ, տեսնում է, որ տաս-քսան երիտասարդ տղաներ ու աղջիկներ ուրախ պարում, զվարճանում են։

Ջրաղացպանին տեսնելով սրանք ասում են.

— Ջրաղացպան քեռի, ինչ կլինի սրինգդ նվագես, որ մենք մի քիչ պարենք, ուրախանանք։

Ծերունին չի մերժում ջահելների խնդիրը ու հանելով սրինգը, սկսում է նվագել, որ նրանք պարեն, զվարճանան։ Ջահելները տեսնում են նրա մեջքի կուզն ու սկսում են ծիծաղել ու երգել։

Կուզը մեջքին,
Մինն էլ մեջքին,
Կուզե-կո՛ւզ...
Կո՛ւզ է, կո՛ւզ։

Ջրաղացպանը բոլորովին չի վիրավորվում նրանց ուրախ կատակից։ Ընդհակառակը, սրինգը բերանից հանում է, ինքն էլ ձեն-ձենի տալիս նրանց ու երգում։

Կուզը մեջքին,
Մինն էլ մեջքին
Կուզե-կո՛ւզ...
Կո՛ւզ է, կո՛ւզ։

Այդ բանը շատ է դուր գալիս ջահելներին և նրանք իրար ասում են.

— Այս մարդը շատ բարի է։ Համ ամեն առավոտ մեզ ցորեն է տալիս, համ էլ իր պակասությունը հանձն է առնում, չի բարկանում մեզ վրա։ Եկեք սրա կուզը մեջքից վերցնենք։





Ասում են ու ջրաղացպանի մեջքից վերցնում են կուզը, դնում մի ծառի փչակում ու թողնում, հեռանում։

Ջրաղացպանի մեջքն ուղղվում է ու, նա, ասես, տաս տարով ջահելանում։

Բերնե-բերան՝ հազար ջերան։ Լուրը գնում հասնում է թագավորին։ «Բա չես ասի՝ էսպես-էսպես, այսինչ ջրաղացպանն ազատվել է իր մեջքի կուզից»։

Թագավորը սաստիկ ուրախանում է։ Դեռ մորուց նա իր մեջքին մի մեծ կուզ է ունենում, որը մի կերպ կարողանում էր թաքցնել ոսկեթել զգեստների ու թանկագին զարդարանքների տակ։ Մի խոսքով, իր կուզը մի կերպ կարողանում էր ծածկել ժողովրդից։

Կուզ թագավորը գալիս է ջրաղացպանի մոտ ու գոռում նրա վրա.

— Այդ ինչպե՞ս է, որ դու քո կուզը մեջքիցդ վերցրել ես ու ոչ ոքի չես հայտնում։

Լեղապատառ ջրաղացպանն ընկնում է թագավորի ոտքերն ու ասում։

— Ողորմած տեր, եթե մի կուզ մարդ գա ու մի շաբաթ ջրաղացպանություն անի իմ տեղ, նրա կուզն էլ կչքանա։

Թագավորը նրան քշում, հեռացնում է գյուղից, ինքը ջրաղացպանություն անում, որ իր կուզն էլ վերանա։

Բայց նա ոչ ձկների համար ցորեն է թափում գետը, ոչ էլ աղունավորների համար ջաղաց-բաղարջ թխում։ «Էդ էր պակաս, որ թագավորը ուրիշին ծառայություն անի», — մտածում էր նա ու սպասում։

Մի գիշեր էլ, երբ նա մեն-մենակ է լինում ջրաղացում, դռան հետևից ուրախ աղմուկ է լսում ու դուրս է գալիս բակ։ Դուրս է գալիս թե չէ, տեսնում է տաս-քսան ջահելներ իրենց համար աղմուկ-աղաղակով պար են գալիս, ուրախանում։

— Ջրաղացպան քեռի, ինչ կլինի սրինգդ նվագես ու գաս մեր հետ պար գաս, ուրախանաս։

— Կորե՛ք, շուն շան որդիներ։ Էդ էր պակաս, որ ես ձեզ համար նվագեմ ու ձեզպեսների հետ պար գամ։

Ջահելները քրքջում են ու սկսում երգել։

Կուզը մեջքին,
Մինն էլ մեջքին,
Կուզե-կո՜ւզ...
Կո՜ւզ է, կո՜ւզ:

Թագավորը կատաղում է ու դագանակը վերցնելով, հարձակվում է նրանց վրա։ Իսկ ջահելներն իրար ասում են.

— Սա շատ չար մարդ է։ Մեզ ջուրն չի տալիս՝ հերիք չի, իր արատը հանձն չի առնում, էլի հերիք չի, հիմա էլ ուզում է մեզ ծեծել։ Եկեք սրան պատժենք։

Ասում են ու ծառի փչակում թաքցրած ջրաղացպանի կուզը բերում, կպցնում են Թագավորի մեջքի կուզին ու հեռանում։

Թագավորի մեջքը դառնում է՝ աթարի դեզ։ Էլ ոչ թանկագին շորերով է կարողանում թաքցնել իր մեջքի կուզը, ոչ էլ ոսկե զարդերով։

Աշխարհով մեկ տարածվում է նրա խայտառակությունը։ Ամեն տեղ ջահելները երգում են.

Թագավորի կուզը մեջքին,
Մինն էլ մեջքին,
Կուզե-կո՜ւզ...
Կո՜ւզ է, կո՜ւզ։




(Գերմանական հեքիաթ)

Հին ժամանակներում ապրում էր մի ծեր կին՝ իր երկու երեխաներով։ Նա շատ հիվանդ էր և միայն հատապտուղ էր ուտում։ Մի օր երեխաները գնացին անտառ՝ մոր համար հատապտուղ հավաքելու։ Նրանք այնքան էին սիրում մայրիկին, որ հավաքելիս ոչ մի հատիկ չէին ուտում։ Եվ շուտով զամբյուղը լցվեց։ Հանկարծ նրանց մոտեցավ ամբողջովին կանաչ հագած մի պառավ և ասաց.

— Ես շատ սոված եմ, չեմ կարողանում կռանալ հատապտուղ հավաքելու։ Ես շատ ծեր եմ, ինձ մի քանի հատապտուղ նվիրեք։

Եվ երեխաները խղճացին պառավին ու իրենց զամբյուղը դատարկեցին նրա փեշը։ Երբ նրանք հեռացան ուրիշ պտուղներ հավաքելու, պառավը կանչեց նրանց, բռնեց ձեռքերից և ասաց.

— Վերցրեք պտուղները. քանի որ դուք այդքան բարի սիրտ ունեք, նվիրում եմ ձեզ մի սպիտակ և մի կապույտ ծաղիկ։ Ուշադրություն դարձրեք նրանց, ամեն օր թարմ ջրով ջրեք և երբեք չկռվեք իրար հետ։

Երեխաները շնորհակալություն հայտնելով գնացին տուն։ Երբ մայրը առաջին հատապտուղը բերանին մոտեցրեց, իսկույն առողջացավ։ Այդ արեց Մշտականաչ տատիկը։

Երբ երեխաները այդ մասին պատմեցին մորը, նա շնորհակալություն հայտնեց բարի պառավին ու ապրեց երջանիկ իր երեխաների հետ։ Իսկ երեխաները ինչքան նայում էին թարմ ու գեղեցիկ ծաղիկներին, հիշում էին տատիկի խոսքերը. «Երբեք չկռվեք իրար հետ»։ Սակայն մի երեկո վիճեցին նրանք և իրարից խռոված գնացին քնելու։ Երբ առավոտյան ուզում էին ծաղիկները ջրել, տեսան, որ նրանք բոլորովին սևացել են։ Երեխաները վախեցան, գրկեցին իրար ու շա՜տ, շա՜տ արտասուք թափեցին ծաղիկների վրա։

Եվ անա սպիտակը կրկին սպիտակ դարձավ, կապույտը՝ կապույտ։ Այդ օրվանից նրանք սիրով էին ապրում իրար հետ։ Այսպես, ծաղիկները նրանց համար մեծարանք դարձան, և նրանք միշտ հիշում էին Մշտականաչ տատիկին։




(Բրազիլական հեքիաթ)

Նկ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Ասում են, թե ճագարն ու կապիկը հնում իրար հետ շատ մտերիմ են եղել։

Մի անգամ նրանք հանդիպեցին բացատում.

— Գիտես ինչ,—ասաց կապիկը,—արի միասին խաղանք. ես թիթեռ կբռնեմ, իսկ դու՝ օձ։ Տեսնենք ով շատ կբռնի։

Ճագարին շատ դուր եկավ այդ խաղը, և նա համաձայնեց։

Շատ ման եկավ ճագարը, թե քիչ, հոգնեց ու պառկեց թփի տակ հանգստանալու և... քնեց։ Կապիկը նկատեց քնած ճագարին ու զգուշությամբ մոտենալով, պինդ ձգեց նրա ականջներից։

— Վա՜յ, այս ինչ էր,—գոչեց ճագարը արթնանալով։

Կապիկը ծիծաղելով ասաց.

— Հա՛, հա՛, հա, ներիր ինձ, ես տեսա ականջներդ և նրանց թիթեռի թևերի հետ շփոթեցի։

Կապիկի այդ չար արարքից ճագարը շատ վիրավորվեց։

«Դե լավ,—մտածեց ճագարը,—դրա համար դու մի օր պատասխան կտաս»։

Մի քանի օր հետո կապիկը քարին նստած բանան էր ուտում։ Ճագարը, որ չէր մոռացել կապիկի հասցրած վիրավորանքը, տեսավ նրան և կամացուկ մոտենալով, եռևից ուժեղ հարվածեց նրա պոչին։ Սուկալի ցավից կապիկը թռավ ծառի վրա և սկսեց խղճալի ձայնով տնքալ։

— Ներիր, խնամի,—ասաց ճագարը,—ես քո պոչը քարի վրա տեսա և կարծեցի, թե օձ է։

Այդ դեպքից հետո, ասում են, ճագարն ապրում է գետնափոր տնակում։ Նա վախենում է, մտածելով, թե կապիկը կարող է վրեժ լուծել։

Թարգմ. Ֆ. ՏՈՆՈՅԱՆ

# ԳՈՐՏԸ ԵՎ ՄՈՒԿԸ

(Բուլղարական հեքիաթ)

Գորտը և մուկը հարևաններ էին։ Գորտը ապրում էր գետի մեջ, իսկ մուկը գետի ափին։ Նրանք լավ բարեկամներ էին, հաճախ տեսնվում էին, պետք եղած դեպքում էլ օգնում իրար։ Գորտը շուտ—շուտ ելնում էր ափ և հյուր գնում իր հարևանին։ Մուկը հյուրասիրում էր նրան հացահատիկներով ու չոր մրգերով։ Երբեմն էլ մուկը իջնում էր ջրի մոտ, և գորտն էր նրան հյուրասիրում ճանճերով ու համեղ ճիճուներով։

Մի օր հացահատիկները վերջացան, և մեր մուկը մնաց սոված։ Նա իջավ գետի ափը ու կանչեց գորտին.

—Գորտ քույրիկ, խնդրում եմ տեղափոխիր ինձ դիմացի ափը։ Այնտեղ հացահատիկ շատ կա։ Ես կուտեմ, կկշտանամ, քեզ համար էլ կբերեմ։

—Ինչու՞ չէ, մուկիկ եղբայր, էլ որ օրվա հարևաններ ենք, որ իրար չօգնենք։ Արի տանեմ։

Գորտը մեջքը դեմ արեց, մուկը նստեց վրան, և գորտը նրան տարավ դիմացի ափը։

Երեկոյան մուկը կանչեց դիմացի ափից.

—Տուն տար ինձ, գորտ քույրիկ։

Գորտը մեջքը դեմ արեց և մկանը տուն տարավ։

Մկանը շատ դուր եկավ այդ և դրանից հետո ամեն օր նա ստիպում էր գորտին՝ իրեն այս ափից այն ափը տանել։

Միայն լսվում էր, թե ինչպես մուկը կանչում էր գորտին։

—Տար ինձ այն ափը։ Տար ինձ տուն։

Եվ գորտը հնազանդ դեմ էր անում մեջքը, մկանը գետի երեսով այս ափից այն ափը տանում։

Վերջիվերջո գորտն այնքան տարավ ու բերեց մկանը, որ ձանձրացավ և սկսեց մտածել, թե ինչ անի, որ նրանից ազատվի։ Մտածեց, մտածեց և որոշեց խեղդել մկանը ու այդպիսով ազատվել ձանձրալի հարևանից։ «Նրան թելով մեջքիցս ամուր կկապեմ,—ասաց ինքն իրեն գորտը.—Թելի մյուս ծայրն էլ կամրացնեմ գոտկիցս։ Ծանրությունը կքաշի նրան ջրի տակ, հենց այնտեղ էլ կսատկի»։

Առավոտյան մուկը նորից ափ եկավ։

—Խնդրում եմ, գորտ քույրիկ, տար ինձ դիմացի ափը, գնամ մի քիչ ցորեն ուտեմ։



Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

—Ախր, մուկիկ, չի կարելի, քամին շատ ուժեղ է, գետը վարարել է, կընկնես ջուրը, կխեղդվես,— ասաց նրան գորտը։

Բայց սոված մուկը չվախեցավ։

—Դու ինձ տար, ես քեզանից ամուր կբռնեմ։

—Դե որ այդպես է, ավելի լավ է, ես քեզ կապեմ մեջքիս, թե չէ քամին քեզ կտանի ջրի տակը։

Մուկը համաձայնեց։ Գորտը նրան թելով կապեց իր մեջքին, թելի մյուս ծայրն էլ ամրացրեց իր ոտքին։ Հենց հասան գետի մեջտեղը, գորտը սուզվեց ջրի տակ և մկանն էլ տարավ հետը։ Մուկն սկսեց իրեն թափահարել, ծվծվալ և օգնության կանչել։

Այդ ժամանակ գետի վրայով մի արագիլ էր թռչում։ Նա էլ հենց կեր էր փնտրում իր ձագերի համար։ Արագիլը տեսնելով մկանը ջրի երեսին, իջավ, բռնեց նրան և վեր բարձրացավ։ Բայց որովհետև գորտն ու մուկը թելով կապված էին իրար, գորտին էլ տարավ հետը։

Երբ արագիլը հասավ իր բույնը, նոր միայն տեսավ, որ գորտը կապված էր մկնից։ Արագիլը գորտ տեսնի և հանգի՞ստ թողնի նրան։ Նա իսկույն թողեց մկանը և վրա պրծավ գորտին։ Կտցեց և սկսեց ուտել։ Մուկը թափ տվեց իրեն, պոկվեց գորտից, դուրս թռավ արագիլի բնից և վազեց, որքան ուժ ուներ։

Նստած մի ծառի տակ, մուկը հեռվից նայում էր, թե ինչպես արագիլի ձագերը ուտում են գորտին։ Նա ինքն իրեն ասում էր.

—Դե մեռիր, անպիտան գորտ, քեզ այդպես էլ պետք էր։ Նա, ով ուրիշին գերեզման է փորում, ինքն է մեջն ընկնում։

Թարգմ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Հայկական լեգենդներ

## ՄԹՆԱՁՈՐ



թնաձորը գտնվում է Հին Գորիս գյուղից վերև բարձրացող սարերի մեջ։ Այստեղ արևի լույսը բոլորովին չի ընկնում, միշտ մութ է և ամպերով ծածկված։

Ասում են, թե հին ժամանակ մի սիրուն աղջիկ է եղել, աղքատի աղջիկ, որ երբ ծիծաղել է՝ չորս կողմը վարդեր, ծաղիկներ են բացվել, երբ լաց է եղել՝ անձրև է եկել։ Մթնաձորում բնակվող դևերը գողացել են այդ աղջկան, տարել ձորի ամենամութ տեղը, ուր արևի լույս չի ընկնում։

Մինչև հիմա էլ, ասում են, աղջիկը այնտեղ է։ Ասում են նաև, որ նա միշտ լաց է լինում, դրա համար էլ Մթնաձորում միշտ թուխպ ու անձրև է լինում։ Մեկ-մեկ էլ, որ այնտեղ եղանակը պարզ է լինում, ասում են, թե աղջիկը քնած ժամանակ ծիծաղում է։

## ՕՁՈՒՄՋԻ ԳՅՈՒՂԸ



ատմում են, երբ Շահ-Աբասը Թիֆլիսի կողմերից շատ գերիներ էր բերում, Թավրիզի մոտակա մի գյուղի մոտից անցնելիս, գերիները կանգ առան և ասացին՝ «օզում չենք», այսինքն, էլ գնալ չենք ուզում։

Շահ-Աբասը իր մարդկանց միջոցով հարցնում է, թե ի՞նչ են ասում գերիները։ Պատասխանում են՝ «Օզում չենք», այսինքն՝ չենք ուզում թողնել մեր հայրենիքը։

Մինչև հիմա էլ այդ գյուղը կոչվում է Օզումչի։

Հավաքեց՝ Ա. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ



# ԵՐԲ ԺԱՆՈԹ ՉԵՍ ԼԻՆՈՒՄ ԲՆՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԻՆ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Սևանը նոր միայն ազատվել էր սառցե կապանքներից և կապտին էր տալիս իր ճերմակ շրջանակի մեջ: Ձյունը այնքան շատ էր, որ ժայռերն անգամ դեռ չէին բացվել, թեև արդեն մտել էինք մարտ ամիսը:*

*Ձյան շեղջերի մեջ թաղվելով, Ծովինար գյուղի մոտ իջա լճափ: Ափից ոչ հեռու լճի երեսին ասեղ գցելու տեղ չկար:- Եվ թռչնային այդ խայտաբղետ ու խառնիճաղանջ բազմության մեջ, հեռվից բոցի նման վառվում էին կարմիր բադաբլարները՝ կրակի պես կարմիր իրենց փոմփոլներով ու կատարներով:*

*Մոտեցա ափին: Մակույկ չկա, բայց հոգ չէ, քամին դեպի ափ է փչում. խփածս թռչունին ալիքները ափ կնետեն: Դեհ, ուրեմն, պատրաստենք մեր երկփողանին և սպասենք հարմար առիթի: Ցրտից չեմ վախենում, հագիս մուշտակ է, ոտքերիս՝ կրկնակոշիկներով հաստ վալենկաներ: Կուչ եկա քարի հետև, թեև գիտեի, որ դիմացս ոչ մի միամիտ թռչուն չկա. նրանք բոլորն էլ նկատել են ինձ, գիտեն ինչ մտադրությամբ եմ թաքնվել, և ոչ մեկը չի մոտենա ափին: Բայց սպասում էի: Մեկ էլ գլուխս հանեցի քարի հետևից, ափի ձյան պատնեշի տակից երկու փարփար դուրս եկան և ջուրը մտնելով, սկսեցին արագ հեռանալ ափից: Ալիքներն իրար առաջ ընկնելով դիմավորում էին նրանց, ետ հրում, իսկ սրանք տագնապով ուժ էին տալիս իրենց ոտքերին: Քամի էր, իսկ ցուրտ քամու ժամանակ ջրհավը (փարփարը) չի սիրում տաք ջրից օդ բարձրանալ, ուստի նրանք իրենց հույսը դրել էին իրենց լողաթաղանթների վրա: Բայց իմ ուղարկած կոտորակը հասավ նրանց հետևից. և երկուսն էլ փռվեցին հերթական ալիքի կատարին...*

*Ինձ բերող սահնակը ծործորում սպասում էր: Կրակոցս լսելով՝ կառապանը մտրակը ձեռքին դուրս եկավ ծործորից ու ձայն տվեց.*

*— Սպանեցի՞ր... դե շուտ արի,— ձիերը քրտնած են...*

*«Ձիերը քրտնած են...» Որս է մնացել ջրի վրա, ի՛նչ ձի, ի՛նչ բան... Այդ կառապանը երևի կյանքում որսորդ չի եղել. դրա համար է թմբին կանգնած ձեռքով ոտքով նշան տալիս՝ շտապեցնում ինձ:*

*Արևը թեքվել է դեպի արևմուտքի լեռները, օրը ցրտում է: Ես անհամբերությունից դոփում եմ գետինը. ինչո՞ւ այդ հիմար թռչունները ափ չեն նետվում: Ուշադիր նայեցի և զարմանքով տեսա, որ լճի եզրերը թեքված են դեպի վեր, բարձր են ջրի մակերեսից, ինչպես, ասենք, մի հարթ թիթեղի եզրերը մի քիչ, աննկատելի չափով ծալած լինեն դեպի վեր: Սպանածս թռչունները քամու հետ հարթ մակերեսով եկել մնացել են այդ ծալքի հետևի փոսում: Ուշադիր նայում եմ. ամբողջ ափի երկարությամբ ջուրը մի քիչ վեր է ձգված: Ա՛յ քեզ բա՜ն, ախր ջուրն ամեն տեղ հավասար մակերես պիտի ունենա, սա ի՞նչ երևույթ է... Ի՞նչ անեմ, հրացանը մեկնում եմ՝ չի հասնում, ջուրը մտնեմ, ախր երկու նիհար թռչունի համար արժե՞ ձմռան այս ցրտին թրջվել: Բայց որսն էլ հո չի կարելի թողնել՝ բազեների բաժին դառնա:*

*— Ա՛յ ընկեր, ախր ձիերը սառեցին, արի եա, է՜,— հետևից նորից կանչեց կառապանը:*

*— Բա որսը՞,— խեղճ-խեղճ հարցրի ես:*

*— Ախպեր, գյուղից երկու հավ կառնեմ կտամ քեզ, արի, ձիերը սառեցին,— համբերությունից դուրս եկավ մարդը:*

*Նրա այդ արտահայտությունից լիովին համոզվեցի, որ այդ մարդը կյանքում որսի գնացած չկա և ինձ բոլորովին չի հասկանում: Ու նրա խոսքից*

վիրավորված և զայրացած՝ լիճը մտա։

— Ա՛յ մարդ, էդ ի՞նչ ես անում, ախր վալենկաներդ...

Իսկապես, մոռացա գոնե վալենկաներս հանել։ Է՜հ, ինչ արած... արդեն ուշ է. չորս քայլ դենը սև ջրահավերն են օրորվում, վալենկս՝ աչքս կգա...

Ափ հանեցի չարաբաստիկ թռչուններին, բայց ամեն ոտքս մի փութ դարձավ։ Քայլում եմ դեպի սահնակը ճիգ գործադրելով, քրտնամխած. կարծես ամեն ոտքիս մի ջաղացքար լինի կապած։ Բայց գնում եմ հրճվանքից կերպարանափոխված և, հավանաբար, դեմքս փայլում է հուզմունքից. կատակ բան չէ, է՜, գոտուցս երկու ջրահավ կա կախված...

Գյուղ հասանք, ինձ առաջնորդեցին նախագահի տունը։

— Կնիկ, վառարանը վառիր,— գոչեց տանտերը՝ ոտքերիս նայելով։ Նայում է ու ներողամտորեն գլուխն օրորում. հավանաբար մտքում ասում է. «Որսորդի խելք է, է՛...»։

Երկու օր տևեց մինչև չորացան իմ թաղիքե վալենկաները... Ա՛յ քեզ հիմար վիճակ, կատարյալ տնային բանտարկություն... Այդ երկու թռչունի պատճառով, որ հիմա, փետրվելուց հետո, այնպես կապույտ ու անախորժ տեսք ունեն, որ վրանները նայել չի լինում...

Բայց այն ի՞նչ փոս էր, ուր ընկել էին այս թռչունները և որից ալիքներն անգամ չէին կարողանում ափ հանել սրանց։ Այդ չարաբաստիկ փոսը, որ այս խաղը խաղաց իմ գլխին, ջրի այդ հանելուկային կորությունը...

Այդ միտքը ինձ երևի երկար ժամանակ հանգիստ չտար, եթե տանտիրոջ աղջիկը բարձրաձայն պատրաստելիս չլիներ իր ֆիզիկայի դասը։ Ես զրուցում էի գյուղացիների հետ, երբ ականջիս հասան նրա կցկտուր թոթովանքները.

— Մարմինների ձգողական ուժը...

— Ա՛յ քեզ դատարկ բա՜ն,— ձեռքս ճակատիս խփեցի ես։

— Ի՞նչը,— զարմացավ խոսակիցս։

— Ախր ափին բլուր կար... բլուրն էր ջրի պըռունկը ձգել վեր-քաշել...

Ու մտածում եմ, թե մարդ ինչ հիմար վիճակի մեջ է ընկնում, երբ լավ ծանոթ չի լինում բնության գործերին։

Պատմեցի գլխիս եկած փորձանքի մասին։

— Հա, ինարկե, սարը ջրին քաշում է... դա մենք ամեն օր ենք տեսնում,— հաստատեց նախագահը. ապա ժպտալով ավելացրեց.— Այդ բանը եթե իմանայիր, երևի ոչ սպանեիր այդ խեղճ թռչուններին, ոչ էլ թրջվեիր... Ասենք, դա լավ եղավ, մի կուշտ զրույց կանենք։ Թե չէ ոտներդ չոր լինեին՝ ֆերմաներից տուն եկողը չէիր...

— Ֆերմաներից կամ՝ որսից,— լրացրեց կոլտնտեսականներից մեկը։

Ծիծաղեցինք։

Ի՛նչ առարկեմ, սրանց էլ է հայտնի իմ թուլությունը. թաց վալենկաներս արդեն ինձ մատնել են...



# ՈՍԿԻ ՁԵՌՔԵՐ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Ես մի տատիկ ունեի,
Հենց որ մ՛ի բան անեի,
Իմ տատիկը անուսում
Ինձ միշտ այսպես էր ասում.
— Ապրե՛ս բալիկ, մեծանաս՝
Ոսկի ձեռքեր ունենաս:

Մի օր՝ թղթից հասարակ
Ես շինեցի մի նավակ.
Տատս առավ լուռ նայեց
Ու գլուխս մեղմ շոյեց.
— Ապրե՛ս, բալիկ, մեծանաս՝
Ոսկի ձեռքեր ունենաս:

Մի օր տախտակ բերեցի,
Սարյակի բույն շինեցի.
Տատս անչափ հիացած՝
Ինձ գուրգուրեց ու ասաց.
— Ապրե՛ս, բալիկ, մեծանաս՝
Ոսկի ձեռքեր ունենաս:

Մի օր, թեև մի քիչ ծուռ,
Ես շինեցի փայտե դուռ.
Տատս տեսավ, ինձ սիրեց,
Կրծքին սեղմեց համբուրեց.
— Ապրե՛ս, բալիկ, մեծանաս՝
Ոսկի ձեռքեր ունենաս:

Օրեր անցան... Մեծացա,
Ատաղձագործ ես դարձա:
Ոսկի են իմ ձեռքերը.
Տատիս ասած խոսքերը
Հիմա նոր եմ հասկանում,
Քե՛զ էլ նույնն եմ ցանկանում.
— Ապրե՛ս, բալիկ, մեծանաս՝
Ոսկի ձեռքեր ունենաս:



Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ



## ԽՃՈՒՂՈՎ ՎԱԳՈՆ Է ԱՆՑՆՈՒՄ

Կարծես, դա դեռ երեկ էր։ Զարմացած թղթակիցները, վեր բարձրացրած գլուխները տարուբերելով, պտտվում էին 25 տոննանոց գիգանտի շուրջը և շտապում լուսանկարվել նրա հսկայական անիվների մոտ։ Բոլորովին վերջերս էր...

Բայց ահա այդ գիգանտն էլ փոքր դուրս եկավ։ Կոնստրուկտորներն ստեղծեցին 40 տոննանոց ինքնաթափի նախագիծը։ Դա, իսկապես, որ գիգանտ է, չէ՞ որ նա ավելի շատ բեռ է վերցնում, քան չորս առնի ունեցող վագոնը։

Բեռնված ինքնաթափի քաշը (75 տ.) հավասար է մոտ 90 «Մոսկվիչի» քաշին։

Բայց ի՞նչ նպատակ ունի դա, ինչի՞ համար անընդհատ ավելացնել ավտոմոբիլի բեռնունակությունը։ Լավ չի՞ լինի արտադրել, ասենք, տասնվեց հատ 2,5 տոննանոց մեքենա, քան մեկ հատ 40 տոննանոց։

Դառնանք թվերին. դրանք բառերից շատ ավելի համոզիչ կերպով կպատասխանեն այդ հարցին։ Նայեք ինքներդ.

| | Բեռի քաշը (տոննաներով) | Ավտոմեքենայի քաշը (տոննաներով) | Շարժիչի հզորությունը (ձիու ուժով) |
|---|---|---|---|
| «ԳԱԶ—51» | 2,5 | մոտ 3 | 70 |
| «ՅԱԶ 200» | 7 | մոտ 6,3 | 110 |
| «ՄԱԶ—530» | 40 | 35 | 450 |

Իսկ այժմ հաշվենք, թե որքան օգտակար բեռ է ընկնում յուրաքանչյուր մեքենայի հզորության ամեն մի ձիու ուժին։ Բեռի քաշը բաժանենք շարժիչի հզորության վրա։ Այչեցուցիչ պատասխան է ստացվում՝ «ԳԱԶ — 51» — 35 կգ, «ՅԱԶ — 200» — 63 կգ, «ՄԱԶ — 530» — 90 կգ։

12 գլանանոց քառատակտ դիզելը հնարավորություն է տալիս մեկ ժամում զարգացնել մինչև 30 կմ. արագություն։

Բայց որտեղի՞ց գտնել այնպիսի ուժ, որը կարողանա պտտել այդ 75 տոննանոց հսկայի ղեկը։ Դրա համար նույնպես ստեղծված է հատուկ հիդրավլիկ մեխանիզմ։

Ամեն մի կուռնկ չի կարողանա բարձրացնել նոր ապրանքատարի 40 տոննանոց հարթակը։ Բայց հիդրավլիկան այստեղ էլ է օգնության եկել։ Նոր ինքնաթափի վրա դրված են երկու հիդրավլիկ վերելակներ, որոնք անմիջականորեն ազդում են հարթակի վրա։

Այսպիսին կլինի նոր «ՄԱԶ—530» ինքնաթափը։ Նրա ռադիատորի վրա կշողշողա արծաթագույն ցուլը՝ դեպի վեցերորդ հնգամյակի կառույցները գնացող ապրանքատար-գիգանտների հզորության խորհրդանշանը։



## Կանաչ բորբոս

Երբ խոնավությունից մթերքը բորբոսնում է, մարդիկ այդ մթերքը թափում են։ Դե պարզ է, ո՞վ չի՞ կարելի բորբոսնած հացն ուտել։ Իսկ բորբոսի վրա ոչ ոք ուշադրություն չի դարձնում։ Բայց քչերը գիտեն, որ հենց այդ բորբոսից է ստացվում այն սքանչելի պենիցիլինը, որով հազարավոր հիվանդներ են բուժվում։

Դեռ հնում, վերք բուժելու համար ծերերը նրա վրա բորբոս էին դնում։ Իհարկե, վերքը դրանից արագ բուժվում էր, բայց միայն 1869 թվականին ռուս հայտնի բժիշկներ Պոլոտեբնովը և Մանասեինը գտան, որ կանաչ բորբոսները միկրոբներ սպանող նյութեր են արտադրում։ Իսկ անգլիացի գիտնական Ֆլեմինգը 1929 թվականին գիտականորեն ապացուցեց ռուս բժիշկների ասածը։ Հենց նա էլ առաջինը պենիցիլին ստացավ։ Պենիցիլինը շատ ուժեղ ազդեցություն է գործում միկրոբների վրա և կանգնեցնում է նրանց աճը։

Հետագայում գիտնականները ուրիշ շատ այդպիսի դեղանյութեր հայտնագործեցին։

Կանաչ բորբոսի այդ սքանչելի հատկությունների հայտնաբերումը հազարավոր կյանքեր է փրկել։




## ԿՐՈՍՎՈՐԴ

**Հորիզոնական**—1. Հայ մեծանուն բանաստեղծ, 5. ազգություն, 6. աշխարհամաս, 8. հայ ականավոր փիլիսոփա, 11. խոսքի մաս, 13. անապատ Աֆրիկայում, 15. ամսվա անուն, 17. սպորտսմեն, 18. պետություն Հարավային Ամերիկայում, 20. երիտասարդական ամսագիր (ռուսերեն), 21. շրջկենտրոն Հայկական ՍՍՌ-ում, 24. միութենական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 26. լեռնաշղթա Հայաստանում, 27. գրենական պիտույք, 28. ասիական պետության մայրաքաղաք, 29. Հայրենական Մեծ պատերազմում զոհված հայ օդաչու, Սովետական Միության կրկնակի հերոս:

**Ուղղահայաց**—2. Սովետահայ գրող, 3. լուսաբաց, առավոտ, 4. արևադարձային կուլտուրա, 5. գետ Սովետական Միությունում, 7. հնունական տառ, 9. ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի, հայ, 10. Դ. Դեմիրճյանի ստեղծագործություններից, 12. հայ ականավոր կոմպոզիտոր, 14. ստեղծագործել, մի նորություն տալ, 15. հայկական լեռ, 16. պետություն Եվրոպայի հարավ-արևելյան մասում, 19. պետություն Եվրոպայում, 22. ածական անուն, որը ցույց է տալիս լիություն, 23. Հմայակ Սիրասի ստեղծագործություններից, 24. խիտ անտառ, 25. բույս լոբազգիների ընտանիքից:

Կազմեց՝ Հ. ՄԱՐԿՈՍՅԱՆ

## ԱՆԱՓ ԾՈՎ

Աշխարհագրական հասկացողությամբ ծովերն օվկիանոսների այն մասերն են, որոնք մտնում են ցամաքի մեջ, կամ օվկիանոսներից բաժանվում են կղզիներով, թերակղզիներով: Յուրաքանչյուր ծով շփվում է ցամաքին, ունի ցամաքային ափ:

Սակայն երկրագնդում կա մի ծով, որն ափ չունի: Ո՞ր ծովն է դա:

Առաջարկ՝ Կ. ՉԹՉՅԱՆԻ

# ՀՆԱՐԱՄԻՏ ՍՈՒՐԻԿԸ

Տատիկը ճաշ էր պատրաստում, իսկ Սուրիկն ու փոքրիկ Տաթևիկը խաղում էին սենյակում: Հանկարծ Տաթևիկը անզգուշորեն բաց արեց ասեղներով լի տուփը և բոլոր ասեղները թափեց հատակի տախտակների միջև գոյացած նեղ անցքի մեջ: Սուրիկը բարկացավ քրոջ վրա: Բայց դա օգուտ չէր տալիս: Հարկավոր էր ասեղները հանել, քանի դեռ տատիկը չէր իմացել: Սուրիկը նայեց շուրջը և սկսեց



մտածել, թե ինչով կարող է հանել ասեղները: Այդ ժամանակ նա տեսավ հացի դանակը և հայրիկի հաստատուն մագնիսը:

— Գտա,—բացականչեց նա ուրախացած:

Զանցած հինգ րոպե, բոլոր ասեղները գտնվում էին տուփի մեջ:

Սուրիկը հատակի նեղ անցքից ինչպե՞ս հանեց տատիկի ասեղները:

Առաջարկ՝ Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ



## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԿՐՈՍՎՈՐԴ

Լուծումը պետք է սկսել սլաքով ցույց տրված փոքր օղակներից: Ճիշտ լրացնելով բոլոր 6 մեծ շրջանակների 5 փոքր օղակները, կենտրոնական շրջանի փոքր օղակներում դուք կկարդաք ռուս նշանավոր աշխարհագետ-ճանապարհորդի անունը:




1. Գետ Եվրոպայում, 2. լիճ ՍՍՌՄ-ում, 3. պետություն Ասիայում, 4. քաղաք Աֆրիկայում, 5. քաղաք Իտալիայում, 6. գետ ՍՍՌՄ-ում:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԱԼԵՔՍԱՆԴՐ ՇԱԽԻԿՅԱՆ
(Ռումինացի գրող)

Վեց թիթեռնիկ,
Նախշուն թևիկ,
Ծաղկից-ծաղիկ են թռչում:
Իսկ չար կատուն,
Դարան մտել,
Նրանց բռնել է ուզում,
Տես չալիկը,
Իմ շնիկը,
Հալածում է չար կատվին.
Երկու թիթեռ,
Խատուտիկներ,
Թարնվեցին թփուտում,
Դեհ, քանի՞սը
Վեր նախրեցին,
Տեսնենք, ո՞վ է ճիշտ հաշվում:

---

Վեց սևուկ ագռավ
Չար կռկռոցով,
Մեծ ցանկապատին
Նստեցին խմբով:
Որսորդը խփեց
Նրանց երկուսին.
Քանի՞սը մնաց
Մեծ ցանկապատին:

Ռուս. թարգմ.

Գ. ԱԼԱԳՅՈԶՅԱՆ



# ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«ՊԻՈՆԵՐ» № 8

ՈՐՔԱՆ Է ԿՇՌՈՒՄ ՇԻՇԸ—№ 2 նկարում («Պիոներ» № 8) ցույց է տրված, որ շիշը կշռում է այնքան, որքան ափսեն բաժակի հետ միասին: Մեկական բաժակ ավելացնելով նժարների վրա, մենք հավասարակշռությունը չենք խախտում (Նկ. 4): Համեմատելով № 1 («Պիոներ» № 8) և № 5 նկարներում պատկերված դրությունները, տեսնում ենք, որ գրաֆինը կշռում է այնքան, որքան մեկ ափսեն և երկու բաժակը միասին վերցրած: Քանի որ երկու գրաֆինի ծանրությունը հավասար է երեք ափսեի ծանրությանը (Նկ. № 3 «Պիոներ» № 8), ապա երեք ափսեն կշռում են այնքան, որքան երկու ափսեն ու չորս բաժակը միասին (Նկ. 5): Այժմ երկու նժարներից էլ վերցնենք երկուական ափսե: Պարզվում է, որ մեկ ափսեն կշռում է չորս բաժակի չափ (Նկ. № 6):

Այժմ վերադառնանք № 2 նկարին («Պիոներ» № 8) և ափսեն փոխարինենք չորս բաժակով (Նկ. № 7): Ուրեմն շիշը կշռում է այնքան, որքան հինգ բաժակը:

Միաժամանակ պարզվում է, որ գրաֆինը վեց անգամ ծանր է բաժակից:

ԿԱՐՈ՞Ղ ԵՔ—



4



5



6



7




ԻՆՉՊԵ՞Ս Է ՄԵՔԵՆԱՎԱՐԻ ԱԶԳԱՆՈՒՆԸ—Հայտնի է, որ կոնդուկտորը ապրում է Երևանի և Լենինականի մեջտեղում (2), ուղևորներից մեկը ապրում է Երևանում (1), իսկ մյուսը՝ Լենինականում (3), ուրեմն ոչ մեկը չի կարող համարվել կոնդուկտորին ավելի մոտ ապրող (4): Հետևաբար կոնդուկտորին ավելի մոտ ապրող հարևանը ոչ Մարկոսյանն է (1) և ոչ էլ Պետրոսյանը (5), որի ամսական աշխատավարձը չի կարող երեք հավասար մասերի բաժանվել (4), այլ Սարգսյանն է: Այդ դեպքում կոնդուկտորը Սարգսյանը չէ (3): Սարգսյանը հնոցապանն էլ չէ (6): Ուրեմն Սարգսյանը մեքենավարն է:

Այժմ արդեն դժվար չէ որոշել մյուսների ազգանունները: Քանի որ ուղևոր Մարկոսյանը ապրում է Երևանում, իսկ ուղևոր Սարգսյանը՝ Լենինականում, հետևաբար կոնդուկտորի ազգանունը Պետրոսյան է (3), իսկ հնոցապանինը՝ Մարկոսյան:

Խմբագրական կոլեգիա

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 08966. Պատվեր 1012. Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 25/IX 1957 թ. ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի 1-ին էջը՝ ժողովրդական նկարիչ ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ*

Համարի գեղարվեստական ձևավորումը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Նկարում են մանուկները



Ծառ
ՀԱՄԼԵՏ ԽԵՉՅԱՆ
(Իջևան) 9 տարեկան



Կամուրջ
ՊԵՏԻԿ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
(Երևանի 31-րդ դպրոց, 3-րդ դասարան)



Բնանկար
ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ
(Երևան) 6 տարեկան



Եղնիկ
ՎԱՐԱԶԴԱՏ ՊԵՏՐՈՍՅԱՆ
(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոց, 4-րդ դասարան)

ՈՒՂՂՈՒՄ

30-րդ էջում կրոսվորդի ուղղահայաց 16-րդ կետը կարդալ. «պետություն Մերձավոր Արևելքում», 24-րդ կետը՝ «անտառազուրկ տարածություններ հյուսիսում»:



Դվինի բերդի ավերակները
ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ
(Արտաշատի շրջան, գյուղ Նորաշեն, 7-րդ դասարան)

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ



ԱՄՍԱԳՐԻՆ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ**

*12 ամիսը — 24 ռ., 6 ամիսը — 12 ռ.,*
*9 ամիսը — 18 ռ., 3 ամիսը — 6 ռ.։*

*ԱՄՍԱԳԻՐԸ ԳՈՒՆԱՎՈՐ Է ԵՎ ՆԿԱՐԱԶԱՐԴ*

1958 թվականին

**ԱՄՍԱԳՐՈՒՄ ԿՏՊԱԳՐՎԵՆ**

*պատմվածքներ,*
*բանաստեղծություններ,*
*հեքիաթներ,*
*զրույցներ,*
*հանելուկներ,*
*խաղեր,*
*հետաքրքրաշարժ*
*տեղեկություններ*

ԵՐԵԽԱՆԵՐԻ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ՝

*բանաստեղծություններ և*
*պատմվածքներ,*
*նկարներ և*
*լուսանկարներ։*

**ԿՍԿՍՎԻ ՏՊԱԳՐՎԵԼ**

*ամսագրի մշտական հերոսներ Պատիկ Խոստիկի և Երկար Մակարի արկածների շարքը*

ԿՏՊԱԳՐՎԵՆ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆԻ,
ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆԻ,
ՍԱՐՄԵՆԻ,
ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆԻ,
ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆԻ,
ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆԻ,
ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ և
ՄՅՈՒՍՆԵՐԻ ՆՈՐ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ակնարկներ կտպագրվեն պիոներների և դպրոցականների հետաքրքրական գործերի մասին



